1916 № 17.—Ապրիլ 24 ԱՌԱՋԻՆ ՏԱՐԻ

# ՀԱՄԲԱՒԱԲԵՐ

ՀԱՍԱՐԱԿԱԿԱՆ-ԳՐԱԿԱՆ ՇԱԲԱԹԱԹԵՐԹ

ԿՈՎԿԱՍԻ ՀԱՅՈՑ ԲԱՐԵԳՈՐԾԱԿԱՆ ԸՆԿԵՐՈՒԹԵԱՆ

10 ԿՈՊԷԿ — ԼՈՅՍ Է ՏԵՍՆՈՒՄ ԿԻՐԱԿԻ ՕՐԵՐԸ — 10 ԿՈՊԷԿ

**ԲԱԺԱՆՈՐԴԱԳԻՆԸ** տարեկան 4 ռուբլի, կէս տարուան 2 ր. 50 կ.։ *Բարեգործական Ընկերութեան անդամներին, հայ դպրոցների, ուսուցիչների և հասարակական հիմնարկութիւնների համար՝* տարեկան 3 ր., կէս տարուան 2 ր.։ *Արտասահման՝* տարեկան 5 ր., կէս տարուան 3 ր.

**ԽՄԲԱԳՐՈՒԹԻՒՆԸ՝** *Թիֆլիս, Սրբազարեան հրապար.* № 7.
**Հեռախօս № 29.**

*Պոստի հասցէն.*—Тифлисъ, „Амбаваберъ". Tiflise, Rédaction du journal „Hambavaber".

**ՅԱՅՏԱՐԱՐՈՒԹԻՒՆՆԵՐ՝** *տողին* **10** *կոպ.*
*Խմբագրութիւնը բաց է առաւօտեան ժամի 10—2 բացի կիրակի և տօն օրերից։*
*Տպագրելու ուղարկուած ձեռագրերը կարող են ենթարկուել փոփոխման և կրճատման։*
*Տպագրութեան համար անյարմար ճանաչուած մեծ յօդուածները պահւում են վեց ամիս խմբագրատանը, իսկ փոքրերը անմիջապէս ոչնչացւում։*
*Տպագրութեան համար անյարմար թղթակցութեանց և յօդուածների առթիւ խմբագրութիւնս պարտաւոր չի համարում գրաւոր բացատրութիւններ տալ։*



ԼՈՆԴՈՆԻ ՔԱՂԱՔԱԳԼԽԻ ՀԱՅ ՓԱԽՍՏԱԿԱՆՆԵՐԻՆ ՆՊԱՍՏՈՂ ԿՈՄԻՏԵՏԻ

## Մ Ի Ս Ս Ի Ա Ն *(Թիֆլիսում)*

*1. Վերապատ. Հարոլդ Բըքստոն, 2. պ. Ալֆրէդ Բակհաուզ, 3. պ. Ջորջ Հաճկին, 4. բժ. Գրահամ Ասպլանդ, 5. օր. Բէատրիս Գարր, 6. Տիկին Արմստրոնգ, 7. օր. Մարգարիտ Բարբըր, 8. պ. Արշակ Սաֆրաստեան։*

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹԻՒՆ



## ԿՈՎԿԱՍԵԱՆ ԶԵՄՍՏՒՕ

Ներկայումս մենք գտնւում ենք մեր երկրի ամենամեծ խնդիրներից մէկի լուծման նախօրեակին, որը պէտք է վերակազմի Կովկասի բազմացեղ ու բազմալեզու ազգաբնակութեան ներքին կեանքը։

Առաջիկայ երեքշաբթի օրւանից Օգոստափառ Փոխարքայի կարգադրութեամբ և նրա Պալատում սկսւում է խորհրդակցութիւն Կովկասում զեմստւօ մտցնելու մասին։

Կէս դար առաջ Ռուսաստանի ներքին նահանգներում կառավարութիւնը սկսեց մտցնել զեմստւօ։ Շնորհիւ նոր ժողովրդական հաստատութիւնների այդ նահանգները և գաւառները սակաւ տարիներից յետոյ կատարելապէս փոխեցին իրենց պատկերը զեմստւոյից զուրկ նահանգների և գաւառների համեմատութեամբ։

Ժողովրդասիրութեամբ տոգորուած ինտելիգենցիան քաղաքներից ուղևորւում է գաւառները, գիւղերը աշխատելու ժողովրդի մէջ նոր հիմնարկութիւններում։

Ամենուրեք սկսւում է եռուն կեանք։

Թէ ժողովրդական լուսաւորութեան, թէ տնտեսական և թէ, վերջապէս, այլ կուլտուրական գործերում նկատւում է մի այնպիսի առաջադիմութիւն, որը անժխտելի է դառնում նոյն իսկ զեմստւոյի հակառակորդների համար։

Վիճակագրական տեղեկութիւնները իբրև պերճախօս ապացոյց հաստատում են այդ անուրանալի իրողութիւնը։ Զեմստւոյական շրջանները սկսում են ծածկուել դպրոցների, գրադարանների, արհեստանոցների, հիւանդանոցների, մանր վարկային և այլ տեսակ կօօպերատիւ և օգտաւէտ հասարակական հաստատութիւնների ցանցով։

Տիրող խաւարն ու աղքատութիւնը տեղի են տալիս ժողովրդի լուսաւորութեան, կուլտուրական ու տնտեսական բարգաւաճման ու ծաղկման։

Իսկ Կովկասը, որը հարիւր տարուց աւելի է, ինչ ձուլուել է Ռուսաստանի հետ, դարձել նրա անբաժան մասը, որ տալիս է Ռուսաստանի նահանգներից ոչ պակաս զեմստւոյական տուրքեր, մինչև օրս չի արժանացել զեմստւոյական հաստատութիւնների, շնորհիւ անհեռատես բիւրոկրատիայի, որը միշտ խորթ աչքով է նայել Կովկասին և անտեղի կասկածանքներով վերաբերուել։ Կովկասի ժողովուրդներին առհասարակ վիճակուած է պարտականութիւններ կատարել առանց համապատասխան իրաւունքների։

Կովկասում զեմստւօ մտցնելու մասին 70-ական թուականներից երբեմն հարց է յարուցուել զանազան հասարակական շրջանների կողմից, բայց հարցը միշտ մնացել է առանց հետևանքի, որովհետև կառավարութեան կողմից ուշադրութեան չէ արժանացել։

Այդ հարցը առաջին անգամ սեղանի վրայ դրուեց ու լուրջ քննութեան առարկայ դարձաւ կոմս Վորոնցով-Դաշկովի փոխարքայութեան ժամանակ, 1905 և 1909 թւերին։ Խորհրդակցութեան հրաւիրուած էին և հասարակական հաստատութիւնների ներկայացուցիչներ, բայց այդ խորհրդակցութիւնն էլ ապարդիւն անցաւ, գործը ինչ-ինչ պատճառներով ընթացք չստացաւ։

Այժմ խնդիրը նորից առաջարկւում է քննել մի առանձին համագումարում, որի մէջ մասնակցելու են կառավարութեան և որոշ հասարակական հաստատութիւնների ներկայացուցիչներ։

Ողջունելի է Փոխարքայի նախաձեռնութիւնը, և մեր բանիմաց հասարակութիւնն ու մամուլը չպէտք է խնայեն եռանդ ու աշխատանք, որ գէթ այս անգամ զեմստւոյի խնդիրը կատարելապէս լուսաբանուի, գործնական ձև ու ընթացք ստանայ։

Սակայն չենք կարող չնկատել, որ խորհրդակցութիւնը պէտք է զգայ դժուարութիւններ իր աշխատանքների ընթացքում, շնորհիւ երկու խոշոր հանգամանքի։

Առաջինը՝ խորհրդակցութեան հրաւիրուածների կազմը շատ անբաւարար է. անդամների զգալի մասը կազմում են պետական պաշտօնեաներ՝ սկսած նահանգապետներից, իսկ ժողովրդական ներկայացուցչութիւնը միանգամայն պակաս է. գիւղացութիւնը, որը գլխաւոր դեր է կատարում զեմստւոյում, իբրև գլխաւոր հարկատու, չունի իր ընտրած ներկայացուցիչները, իսկ հասարակական հաստատութիւններից շատերն նոյնպէս չեն հրաւիրուած մասնակցելու։

Այդ խորհրդակցութեան մէջ աւելի լսելի պէտք է լինէր հողագործի, գիւղացու և այն հասարակական հաստատութիւնների ներկայացուցիչների ձայնը, որոնք իրենց գործունէութեամբ կապուած են գիւղացութեան հետ։

Երկրորդ թերութիւնը խորհրդակցութեան այն է, որ կառավարութիւնը իր կողմից չի ներկայացնում մի

որոշ ծրագիր, որը քննութեան նիւթ ծառայէր։ Այս պատճառով խորհրդակցութեանն է մնում մշակելու այն էական սկզբունքները, որոնց հիման վրայ կարելի կըլինի կազմել Կովկասեան զեմստուօն, յարմարեցնելով իրական հանգամանքներին և 1890 թ. օրէնսդրութեան, որը վերաբերում է Ռուսաստանի ներքին նահանգներում գործադրուող զեմստուոյին։

Կովկասեան զեմստուօն պէտք է ստանայ այնպիսի կազմակերպութիւն, որ ազգութիւնների պառակտումներ չծագեն, ազգերից մէկը միւսի վրայ ճնշող չհանդիսանայ, որ շահերի ընդհարումներ տեղի չունենան և այլն։ Կովկասեան զեմստուօն պէտք է ռամկավարական սկզբունքի վրայ դրուի, որպէսզի ամեն մի տուրք տուող իրաւունք ունենայ մասնակցելու զեմստուոյին։ Այս էական խնդիրները կանոնաւոր և արդարացի լուծելու համար մեր կարծիքով, ի միջի այլոց, հարկաւոր է՝

ա) որ զեմստուոյի շրջանները կազմուեն այնպէս, որ ամեն մի շրջանում միատեսակութիւն լինի թէ տնտեսութեան և թէ ազգարնակութեան տեսակէտից.

բ) որ Ընտրողական ցենզը որքան կարելի է փոքր ու մատչելի լինի տուրք տուողների համար.

գ) որ ընտրուողների համար սահմանուի որոշ և պարտաւորիչ կրթական ցենզ, և

դ) շրջաններին իրաւունք տրուի միմեանց հետ միութիւն կազմելու զանազան խնդիրների, ձեռնարկութիւնների և գործերի առթիւ։

Յուսանք, որ գէթ այս խորհրդակցութիւնը բեղմնաւոր և արդիւնաւոր լինի, և Կովկասի ժողովուրդները վերջապէս ստանան այն հաստատութիւնները, որոնց միջոցով կարող են տնօրէն լինել իրենց կրթական, կուլտուրական և տնտեսական գործերում։

Ս. Յ.

---

## ԽՄԲԱԳՐԱԿԱՆ

—

Խմբագրութիւնս սրանով յայտնում է ի գիտութիւն բաժանորդ գրուողների, որ թերթիս №№ 4 և 6 բոլորովին սպառուած են։

—

Եղբ. Սէյլանոմենրի նուէրների հաշուին ուղարկւում է «Համբաւաբեր» ետ Համամլու, Ղալթախչի և Դշլաղի գաղթական դպրոցներին, մի-մի օրինակ։

—

Յովսէփ Քրիստափոր. Յովսէփեանի նուէրների հաշուին «Համբաւաբեր»-ի մի օրինակ ուղարկւում է Բալլուջայ գիւղի դպրոցին։

---

# Ներքին տեսութիւն

---

### ԼՈՆԴՈՆԻ ԼՈՐԴ-ՔԱՂԱՔԱԳԼԽԻ ՀԱՅԿԱԿԱՆ ՄԻՍԻԱՆ

—

Ինչպէս ծանօթ է մեր ընթերցողներին, տաճկահայ փախստականներին օգնելու համար անցեալ հոկտեմբերին Լոնդոնի լորդ քաղաքագլխի պատուաւոր նախագահութեամբ և քաղաքական և կրօնական բոլոր կուսակցութիւններից պատուաւոր անձնաւորութիւնների աջակցութեամբ կազմուեց մի ֆոնդ։ Այդ ֆոնդը Վեհ. Կաթողիկոսին և Կենտրոնական Կոմիտէի ներկայացուցիչ պ. Ս. Յարութիւնեանին փոխադրել է նպաստի կարևոր գումարներ։

Այժմ Լորդ-քաղաքագլխի ֆոնդը ուղարկել է մի նպաստաբաշխ-բժշկական խումբ օգնելու տաճկահայ փախստականներին։

Խմբի անդամներն են՝

1. պ. Հարոլդ Բըքստոն, ամենից երիտասարդ անդամը յայտնի ազնուական ընտանիքի։ Անգլիայում ծանօթ իր հասարակական գործունէութեամբ. առանձնապէս հայ եկեղեցուն օգնած, ծանօթ, իսկ վերջերս էլ յայտնի է հայոց աղէտի դարմանման գործին եռանդուն մասնակցութեամբ։

2. Բժ. Գրահամ Ասպլանդ, հազարապետ Անգլ. բանակի։ Պատերազմի ընթացքում ծառայել է Ֆրանսիայում և Սերբիայում, ուր անցեալ ձմրան Աւստրո-գերմանական արշաւանքի ժամանակ գերի ընկաւ Աւստրիացիների ձեռքը։ Վիէննայում 4 ամիս գերի մնալուց յետոյ ազատ արձակուեց անցեալ մարտին և երեք շաբաթ Անգլիա մնալուց յետոյ՝ ուրախութեամբ մասնակցում է հայկական այս բժշկական խմբին։

Բժշկապետ Ասպլանդի հետ եկել են երեք գթութեան քոյր.

3) Օր. Բէատրիս Գարր, մի իրլանդուհի, որ եղել է Սերբիայում և անցեալ ձմեռուան նահանջի ընթացքում երկու ամիս ոտքով քայլել է ցեխի և ձիւնի միջով՝ սերբ փախստականների հետ և անցել է Ալբանիոյ լեռներից։

4. Օր. Մարգարիտ Բարբըր, եղել է Սերբիայում, գերի է ընկել Աւստրիացիների ձեռքը և մի քանի ամիս Վիէննայում մնալուց յետոյ՝ ազատ է արձակուած։

5. Տիկին Արմստրոնգ, մի անգլուհի, որ երկար ծառայել է զինուորական հիւանդանոցներում։

6. Պր. Ալֆրէդ Բակհաուզ, որ նպաստի գործերով եղել է Ֆրանսիայում և այժմ Անդրկովկասում օգնում է պր. Բըքստոնին։

7. Պր. Ջորջ Հաճըրին, սեղանաւոր (բանկիր)։

8. Պր. Արշակ Սաֆրաստեան գործակցում է իբրև քարտուղար։

---

### ՀԱՅԿԱԿԱՆ ԿԵՆՏՐՈՆԱԿԱՆ ԿՈՄԻՏԷԻ ԱՐՏԱԿԱՐԳ ՆԻՍՏԸ

—

Ապրիլի 18-ին կայացաւ Հայկ. Կենտրոնական Կոմիտէի արտակարգ նիստը նախագահութեամբ պ. Ս. Յարութիւնեանի։

Այդ նիստին ներկայ էին, բացի պատուաւոր նախագահ Մեսրոպ եպիսկոպոսից և բոլոր անդամներից, Անգլիական միսիան գլխաւորութեամբ պ. Բըքստոնի և Ամերիկայից եկած բժ. Գերշնէյա Կրէսսի։ Նախագահը, բացելով նիստը՝ մի հակիրճ ճառով ողջունեց Անգլիական և Ամերիկական հայ փախստականներին օգնող կոմիտէների ներկայացուցիչներին և ապա ընդարձակ կերպով զեկուցեց փախստականութեան ամբողջ շարժման պատմութիւնը։ Զեկուցումը տևեց 2 ժամից աւելի։ Նորեկ հիւրերը լարուած ուշադրութեամբ լսում էին զեկուցումն և գրի առնում։ Զեկուցման վերջը պ. նախագահը ներկայացրեց և դրամական հաշիւը Հայկական Կոմիտէի այն ամիսների, երբ անգլիական կոմիտէն սկսեց փողեր ուղարկել, այսինքն դեկտեմբերից մինչև ապրիլի 1-ը։ Այդ հաշուից երևաց, որ ստացուել է 841.000 ռ., որից 25200 ռ. ուղարկել է անգլիական կոմիտէն. ծախս նոյն ժամանակամիջոցում եղել է 568.148 ռ.։

Պ. Ս. Յարութիւնեանը նկարագրեց փախստական երեխաների դպրոցները և որբանոցները ևս։

Հիմնուած է 80 դպրոց, 226 ուսուցիչներով և 7800 աշա-

*կերտներով։ Մօտ 47000 աշակերտական հասակի երեխաներ դուրս են մնացել դպրոցներից։*

*Որբանոցների թիւը 46 է, որոնց մէջ ընդունուած են մօտ 4500 երեխաներ։*

*Զեկուցումից յետոյ պ. Բըկստոնը 'ի պատասխան պ. Յարութիւնեանի ճառի յայտնեց, որ հայերը Անգլիայում արժանացել են մեծ հետաքրքրութեան և համակրանքի, որ Անգլիան պատրաստ է հայերին աջակցելու՝ թէ նրանց թշուառութիւնը թեթեւացնելու համար և թէ ապագայում կանոնաւորելու նրանց վիճակը Հայաստանում։*

*Մեծ ոգևորութեամբ և զգացուած ճառ արտասանեց Ամերիկայի բժիշկ պ. Կրէսսին, որը պերճախօս կերպով բացատրեց, թէ Ամերիկայում ևս հայերը մեծ համակրանքի են արժանացած։*

*Հետևեալ օրը երկու բժշկական խմբերը ուղևորուեցին Հայաստան. մէկը Վան գլխաւորութեամբ անգլիացի բժշկի, իսկ միւսը Ղարաքլիսա՝ գլխաւորութեամբ ամերիկացի բժ. Կրէսսի, որին Հայկական Կենտրոնական Կոմիտէն յանձնարարեց բացել հիւանդանոց և տալ բոլոր հարկաւոր պարագաները ու միջոցները։ Բժիշկները եկել են իրենց հաշւով և ծառայելու են ձրիաբար։*

---

## ՀԱՍԱՐԱԿԱԿԱՆ ԽՆԱՄԱՏԱՐՈՒԹԻՒՆ ԵՒ ԲԱՐԵԳՈՐԾՈՒԹԻՒՆ *)

(Վերջ)

—

*Զբաւորների խնամատարութիւնը Էլբերֆելդի սիստեմի համաձայն ունի նաև կենտրոնական խնամատար մարմին* (Städtishee Armen Verutaltung) *Քաղաքի աղքատախնամ վարչութիւն, որի նախագահն է քաղաքագլուխը։ Այդ կենտրոնական մարմնի մէջ են մտնում 4 քաղաքային խրաւատու և 4 ընտրողական իրաւունք ունեցող քաղաքացի։ Այդ անդամները ընտրւում են քաղաքային խորհրդից 3 տարի ժամանակով։ Քաղաքային կենտրոնական մարմինը հսկում է խնամատարութեան գործի և վերջինիս մարմինների վրայ թէ փակ հիմնարկութիւնների (ինչպէս են որբանոց, ընկեցիկների ապաստարան, հիւանդանոց, վարակիչ հիւանդութիւնների հիւանդանոց և այլն) և թէ արտաքին (իրենց տանը ապրող) խնամատարութեան օրգանների վրայ. 2) հետազօտում է աղքատ դասակարգի կացութիւնը և չքաւորութեան պատճառները, ձեռնարկում է միջոցներ այդ պատճառները վերացնելու, 3) ներկայացնում է քաղաքային խորհրդին հասարակական խնամատարութեան նախահաշիւը, 4) կառավարում և գործադրում է խնամատարութեան գործին յատկացրած գումարները և 5) քաղաքային խորհրդին ներկայացնում է խնամատարութեան գործի մասին զեկուցում և հաշուետուութիւն։*

*Ինչպէս յիշատակուեց, քաղաքը բացի արտաքին խնամատարութիւնից ունի նաև փակ խնամատար հիմնարկութիւններ, որոնց կազմակերպման սկզբունքները չեն տարբերւում ուրիշ նման հիմնարկութիւնների կազմակերպման սկզբունքներից, բայց աւելի լաւ են տարւում, քան ուրիշ քաղաքներում։*

*Որ Էլբերֆելդի խնամատարութեան սիստեմը տալիս է լաւ հետևանքներ, այդ պարզւում է հետևեալ փաստերից. Մինչև 1855 թ., երբ դեռ նոր էր մտցուած այդ սիստեմը, ամեն մի 1000 բնակչից արտաքին խնամատարութիւն էին վայելում 17,6 մարդ, իսկ 1888—89 թ.—7,1։ Թէպէտև տարէցտարի խնամատարութեան ծախքերը աւելանում են, բայց աւելի դանդաղ՝ քան քաղաքի բնակչութիւնը։*

*1856 թ. բնակչութիւն 51.000 հոգի—խնամատարութեան հարկի գումարը 166.000 մարկ. 1888 թ. բնակչութիւն 110.000 հոգի—խնամատարութեան հարկի գումարը 234.556 մարկ։*

*Ամեն մի բնակչի վրայ տարեկան խնամատարութեան հարկ էր ընկնում 3,23 մարկ, իսկ 1886—87 թ.—ընդամենը 2,14 մարկ, չընայելով որ օժանդակութեան միջին գումարը 35 մարկ 37 պֆ.-ից բարձրացել էր 54 մարկ 49 պֆենինգի. 1853 թ. 1886 թ. ընթացքում քաղաքը խնամատարութեան գործի վրայ ծախսել է 4 միլիոն մարկից քիչ աւելի, իսկ եթէ գործադրուելիս լինէր հին սիստեմը, կը ծախսուէր 8,5 միլիոն մարկ։*

*Այդ սիստեմը Ռուսաստանում սկսեց գործադրուել առաջին անգամ Մոսկուայում 1894 թուից, որի օրինակին հետևեցին և այլ ռուսական քաղաքներ՝ Խարկով, Սարատով, Պենզա, Տուլա և այլն։ Իսկ Պետրոգրադը այդ սիստեմին սկսեց անցնել միայն 1907 թուին։*

*Մուրացկանութեան և շրջմոլիկութեան դէմ աւելի յաջող կերպով կռուելու համար Գերմանիայում ստեղծուել են աշխատանոցներ* (Arbeiter Kolonien) *և կայաններ։*

*Անկասկած է, որ միայն աշխատանոցները, որոնց դերը համեստ է, բաւական չեն մուրացկանութիւնը և շրջմոլիկութիւնը վերացնելու համար։ Աշխատանոցները ունեն իրենց յատուկ նշանակութիւնը այն ընդհանուր սօցիալական միջոցների մէջ, որ ձեռնարկւում են յիշեալ նպատակին հասնելու համար և ունեն հասարակական խնամատարութեան գործում օժանդակիչ նշանակութիւն։ Դժբախտաբար աշխատանոցները դեռ ևս կախումն ունին միայն մասնաւոր անհատների ձեռներէցութիւնից ու եռանդից և տեղական կառավարութեան մարմիններից ստանում են միայն օժանդակութիւն։ Առաջին անգամ հիմնուեց աշխատանոցը Գերմանիայի Վեստֆալիա նահանգում շնորհիւ մի եռանդուն քահանայի (պաստորի) ձեռներէցութեան։ Այդ պաստորը ժողոված գումարով գնեց մի հողամաս մի քանի շինութիւններով և այդտեղ կազմակերպեց երկրագործական աշխատանոց։ Այդ աշխատանոցի մէջ կարող էր ընդունուել ամեն ոք՝ առանց հասակի և կրօնի խտրութեան, բացի վարակիչ հիւանդներից։ Բայց հետագայում բացուած աշխատանոցները առաւելութիւն են տալիս տեղական բնակիչներին. (օր. Ֆրիդրիխսուիլլէի աշխատանոցը)։ Սկզբում նոր ընդունուած աշխատաւորը մօտ 2 շաբաթ կամ մի ամիս չի ստանում ոչ մի վարձատրութիւն, այլ միայն ապրուստի յարմարութիւն։ Յետոյ նշանակում են վարձատրութիւն, սակայն աշխատաւորին չեն տալիս, վախենալով մի գուցէ սա գումարը անտեղի ծախսի։ Շնորհիւ այդ հանգամանքի աշխատաւորը դուրս գալու ժամանակ ունենում է մի որոշ գումար։ Իհարկէ աշխատանոցների նպատակն է վարժեցնել մուրացկանութեամբ զբաղուող մարդկանց և շրջմոլիկներին վաստակաւոր կեանքի։ Այս տեսակէտից հետաքրքրական է, որ այդ աշխատանոցների բնակիչների մեծամասնութիւնը մինչև աշխատանոց ընդունուելը ենթարկուել է որևիցէ քրէական պատժի։ Եւ ի հարկէ այդ ցոյց է տալիս, որքան օգտակար են աշխատաւորները մանաւանդ այն մարդկանց, որոնք, աւարտելով բանտարկութեան շրջանը և զուրկ լինելով նիւթական միջոցներից, շատ յաճախ նորից յանցանք կը գործէին, եթէ օգնութիւն չըգտնէին այդպիսի աշխատանոցներում։ Իհարկէ, ամեն մի աշխատաւոր ազատ է թողնել աշխատանոցը։ Բայց աշխատաւորների որոշ տոկոսը (20%) հեռանում է, երբ գտնում է այլ աշխատանք։ Խօսք չը կայ, որ աշխատանոցների այդ պաշտօնը պէտք է աւելի ևս զարգացնել։ Ուրախալի է, որ չնչին (4%) տոկոսն է միայն հեռացւում աշխատանոցից վատ վարքի և կամ որևիցէ վատ արարմունքի համար։ Ուրախալի է նաև այն հանգամանքը, որ այն շրջաններում, ուր բացուել են այդպիսի աշխատանոցներ, յանցագործների թիւը պակասել է 25-30%-ով։*

*Աշխատանոցի առաջին օրինակը առաջ բերաւ մի շարք աշխատանոցներ, այնպէս որ 1906 թուին Գերմանիան ունէր 33 աշխատանոց, որոնցից միայն մէկն էր արդիւնաբերական, մէկը խառն էր, իսկ միւսները երկրագործական։ Մինչև 1906 թ. այդ աշխատանոցներն էին ընդունել 170,000 մարդ։*

*Այժմ այդ աշխատանոցները ունին կենտրոնական կառավա-*

---

*) Տես «Համբաւաբեր» № 15։

*ւեալն է—ոչնչացնել վաճառականութեան ազատութիւնը, հիմնել կենտրոնական պարենաւորման յանձնաժողով, մտցնել մթերքներ առնելու համար տոմսակներ։ Այդ ծրագրի հիման վրայ, Մոսկուայի լիազօր ուսուցչապետ Նիժեգորոդսկին տալիս է որոշ վաճառականներին վագոններ մթերքներ բերելու, պարտաւորեցնելով նրանց ծախել որոշ գնով։*

*Թանգութեան մի այլ պատճառն է թղթադրամի չափազանց մեծ քանակով հրատարակելը պատերազմի կարիքները հոգալու համար։*

*Յունուարի 1-ին 1915 թ. կային են 3200 միլիոն ռուբլի թղթադրամ, 1 յուն. 1916 թ. արդէն 5622 միլիոն ռ., իսկ օգոստ. վերջին 1916-ին մենք կունենանք 10000 միլիոն ռ. թղթադրամ կամ 10 միլիարդ։ Թղթադրամը չի կորցնի իր նշանակութիւնը, եթէ պետական բանկում ճար անձեռնմխելի ոսկէ դրամ։ Ռուսաց ռուբլու կուրսը ընկնելիս, դիմում են այսպէս ասած «դէվալվացիային». պաշտօնապէս յայտարարւում է, օրինակ, որ 1 ռ. թղթադրամը արժէ 60 կ. ոսկէ դրամ, իսկ աւել թղթադրամը պետութիւնը ոչնչացնում է։ Բայց պետութիւնը ստիպուած է պակասեցնել իր ոսկու պաշարը, որովհետև պարտքի տոկոսները պիտի վճարի ոսկի դրամով։ Ռուսաստանի պետական պարտքը առ 1 յուն. 1913 ամի 920 միլիոն էր. առ 1 յուն. 1915 ամի 2022 միլիոն և առ 1 յուն. 1916 ամի 3000 միլիոն։ Վճարելի տոկոսներ արտասահմանում նոր ժամանակուայ համար 45 միլիոն, 108 միլիոն, իսկ այժմ 240 միլիոն տարեկան.*

*Ինչպէս դուրս գալ այս տնտեսական տագնապից։ Պետութիւնը ստանում էր օղու մենավաճառից մօտ 900 միլիոն ռուբլի, այժմ կորցրել է այդ, իսկ եկամտահարկից կարելի է ստանալ չնչին գումար, 20 միլիոն ռ.։ Պ. Մանուիլովը յոռետես չէ, այլ լաւատես. տնտեսական վերածնութիւնը, նրա կարծիքով, արդիւնաբերութիւնը բարձրացնելու մէջ է ։ Կովկասի բնական հարստութիւնները ոչ միայն մշակուած կամ ազատուած չեն, այլ նոյն իսկ հետազօտուած չեն։ «Կովկասի վերածնութեան մէջ եմ տեսնում», վերջացրեց դասախօսը, «ապագայում Ռուսաստանի վերածնութիւնը։*

*Տ. Աթ.*

---

## ՀԱՅ ՄԵԿԵՆԱՍՆԵՐԻՆ Ի ՏԵՂԵԿՈՒԹԻՒՆ

*Նամակ խմբագրութեան*

*Իմ երկարամեայ ուսուցչութեանս օրերում ունեցել եմ շատ աշակերտներ, որոնց մէջ միշտ եղել են այնպիսիները, որոնք աչքի են ընկել իրենց ընդունակութիւններով։ Սակայն բոլորին գերազանցում են երեքը, որոնց ընդունակութեանը չափ ու սահման չկայ, իսկ նոքա էլ չքաւոր և կարօտ ուսման։ Դրանցից մէկը գաղթական 12 տ. երեխայ է, որ իր խելացի քննադատութեամբ և տրամաբանութեամբ մի ֆենոմէն է, 2-դը 9 տարեկան, ունի արտասովոր բեմական ընդունակութիւններ. սրա կարդալու մի ողբերգական գրուածքի ազդեցութիւն լսողներից մէկը ուշքից գնաց և 3-դը 10 տարեկան, արտայայտում է եզակի բանաստեղծական ընդունակութիւն և արդէն ունի գրած բազմաթիւ բանաստեղծութիւններ և երգեր։ Մեծ բարերարութիւն կատարած կը լինեն այն անձինք, որոնք կհամաձայնէին այս երեք երեխաներին միջոցներ տալու իրենց ուսումը շարունակելու միջնակարգ դպրոցներում. սրանց ընդունակութիւնները մեծ գրաւական են փայլուն ապագայի։*

*Ուսուցիչ Սալի գիւղի (Ղազախի գաւառ) Մուշեղ Տէր Գրիգորեան*

---

## ԷՐԶՐՈՒՄԻ ԱՆՑԵԱԼԻՑ*)

Ը

### ԱՌԱՋԻՆ ՆՇԱՆՆԵՐԸ

II

*Գեներալ Լազարեանի գնալուց մի շաբաթ յետոյ էր, յունիսի 22-ին, որ Բեռլինի վեհաժողովը առաջին անգամ խօսք ունեցաւ Սան-Ստեֆանոյի դաշնագրութեան 16 յօդուածի մասին, որ վերաբերւում էր հայերին։ Հայկական պատուիրակութիւնը, որ սպասում էր Բեռլինում, հիասթափման, նոյն իսկ յուսահատութեան մէջ ընկնելու կատարեալ իրաւունքն ունէր։ Վեհաժողովը չը սպասեց նրան, նկատի չառաւ Ներսէսի ուղարկած կազմական կանոնադրութիւնը, որ ինքնավարութիւն էր Հայաստանի համար։ Յաղթանակում էր անգլիական քաղաքականութիւնը։ Նա հրապարակ հանեց մայիսի վերջերին Անգլիայի և Թիւրքիայի մէջ կընքուած պաշտպանողական գաղտնի դաշնագրութիւնը, որ մանաւորապէս նկատի ունէր Հայաստանը թիւրքական տիրապետութեան տակ պահելը և չէզոքացնում էր Սան-Ստեֆանոյի 16-րդ յօդուածը նրանով, որ ծրագրում էր մտցնել ընդհանուր ռեֆորմներ Թիւրքաց պետութեան մէջ։*

*Այս դաշնագրութիւնը հարուածում էր ամենից առաջ ռուսներին, որոնց ներկայացուցիչները բոլորովին չը պաշտպանեցին Հայոց Հարցը վեհաժողովում։ Հետևեալ նիստին, մի երկու խօսքերի փոխանակութիւնից, վեհաժողովն ընդունեց Սան-Ստեֆանոյի 16-րդ յօդուածը փոխարինող մի այլ խմբագրութիւն, որ կազմել էր մարքիզ Սոլսբիւրին և որ դարձաւ Բեռլինի դաշնագրութեան 61-րդ յօդուածը։ Այդ խմբագրութիւնից դուրս էր գցուած Հայաստանում ռուսաց զօրքերի մնալու յիշատակութիւնը, ասել է՝ վերացւում էր և այն երաշխաւորութիւնը, որ պարունակում էր իր մէջ Սան-Ստեֆանոյի 16-րդ յօդուածը։ Դրա փոխարէն՝ հայկական նահանգներում մտցնելիք բարենորոգումների հարցը տըրւում էր բոլոր վեց պետութիւնների հսկողութեան տակ։—*

*Այսքան չնչին հետևանքների էր հասնում հայ ազգը իր գործադրած անօրինակ ջանքերից յետոյ։ Հայ պատուիրակութիւնը Բեռլինից վերադարձաւ տխուր ու յուսահատ և այդ տրամադրութիւնն էլ հաղորդեց ամբողջ հայ համայնքին։ Յայտնի գրող Ծերենցը այսպէս էր ներկայացնում թիւրքահայ ժողովրդի տրամադրութիւնը յունիսի վերջերում և յուլիսի սկզբում.*

*«Մենք ազգը այսպէս բնաւ չէինք տեսել. ով և ինչ որ լինի որ, մեծ և փոքր, հարուստ և աղքատ, եկեղեցական և աշխարհական, ծեր և տղայ, այր և կին, տէր և ծառայ, գիտուն և տգէտ, բնիկ ու պանդուխտ, բաւական է թէ հայ է, հարցմունք մը միայն ունի, հարցմունք՝ տխուր, դառն և անթափանց.*

*«—Ի՞նչ լուր Պերլինէն։*

*«—Նոյնպէս և այն ձևով է պատասխանը.*

*«—Ոչինչ, գէշ։*

*«Այս համառօտ հարց-պատասխանէն վերջը կը սկսի խօսակցութիւն մը, ուր ամեն ոք ըստ իւր հեռատեսութեան կը քննէ երեկուան անցեալը և վաղուան ապառնին։*

*«Հոն երիտասարդը, որ լի էր յոյսով և որուն գլխուն մէջ դեռ երէկ երջանիկ և զուարթ ապագայի մը երազները կը շրջէին, կը տեսնենք լի կիրքով ու զայրութով կը մռնչէ։ Հոն ծերը սըրտով ու մտքով, որուն սառ գլխուն մէջ յոյս երբէք չի թափանցեր և ամեն պարագայի չարագուշակ մարգարէ մը եղած է, իր իմաստութիւնն ու նախատեսութիւնը կամաց ջախջախ ձայնով առաջ կը քշէ։*

*«Առաջինին յուսահատութիւնը կիմանանք։ Երիտասարդութիւնը շուտ կոգևորի, շուտ կը լքանի, սպասենք ուրեմն որ հասունանայ։*

*«Բայց այդ ծերուն՝ որ ոչ անցեալը կը յիշէ ու ոչ ներկայն*

---

*) Տես «Համբաւաբեր» № 16։

նուող հայ պաշտօնեաների, թէ իր անձնական խօսակցութիւնների միջոցով։ Սակայն այս բոլոր միջոցները շատ քիչ էին ազդում։ Սեպտեմբերի սկզբին ռուսաց զօրքերը պիտի հեռանային Էրզրումից։ Այս հանգամանքը համարեա տագնապ էր առաջացրել հայ ազգաբնակութեան մէջ։ Արդէն առանձին փորձեր էին լինում ռուսաց սահմանն անցնելու և այդպիսով վերահաս վտանգից ազատուելու համար։ Ուստի Լազարեանը օգոստոսի 24-ին ուղղեց Էրզրումի նահանգի հայ ազգաբնակութեան հետևեալ կոչը.

Առ ազգն Հայոց՝ որ ի Կարին քաղաքի և ի շրջակայ գաւառս»։

«Լուր հասաւ մեզ որ քրիստոնեայ բնակիչք Կարնոյ և շրջակայից, ուսկից այս մօտերս, ըստ դաշնագրութեան որ ի մէջ Ռուսաց և Օսմանեան պետութեանց, մեկնելու է մեր զօրքը, անհանգստութեան մէջ են իրենց ապագայ վիճակին համար։ Իբրև գլխաւոր իշխող կողմանցս, ազդեալ եմ բարձրագոյն իշխանութենէ, որ յետ մեկնելոյ ինձ ենթարկեալ զօրացս, ձեզ անհանգստութիւն տուող և ձեր վիճակը վտանգաւոր չի պիտի լինի ամենևին։ Եթէ գտնուեն չարակամ անձինք, որ իւրեանց անձնական շահու կամ այլ իմն նպատակաւ ձեր մէջ վրդովեցուցիչ լուրեր տարածելով, կաշխատեն համոզել որ իբր թէ նեղելու են զձեզ,— զայնպիսիները հեռացուցէք ձեզմէ կամ տեղւոյդ իշխանութեանը ներկայացուցէք զիրենք։ Վստահ եղէք որ այսուհետև անդորր և հանգիստ կեանք պիտի վայելէք առանց գաղթելոյ տեղերէդ, ուր ձեր նախնեաց գերեզմաններն են և ձեր գերդաստանները կը բնակին։ Մի հեռանաք ձեր երկրէն, ուսկից ձեր երջանկութիւնը կախեալ է. գիտցէք, որ ձեր գաղթականութեան հետևանքները պէս-պէս զրկանք և թշուառութիւնք են, մանաւանդ մեր սահմանները գաղթողը, ուր երկիրները ձեզ անծանօթ լինելով, անորոշ և մութ ապագայի մը դիմելու էք.

«Վստահ եղեք, որ մեր հզօր կայսեր և նորա ժողովրդեան հետ մէկ տեղ կը համակրեն ձեզ Պեռլինի դաշնագրութիւնը ստորագրող Եւրոպայի միւս տէրութիւններն եւ։ Տարակոյս չունիմ, որ Օսմանեան պետութիւնն եւ պատրաստ է իւր կողմանէ յանձն առնուլ առ ձեզ ունեցած պարտաւորութիւնները միւս հպատակաց հետ համահաւասարապէս, որով ձեր կայքը և ձեր անձը բոլորովին պիտի ապահովանան։

«Ի դառնալն իմ յԷրզրում, նոյն այս միտքս բացատրել էի ձեր ներկայացուցիչներին և որովհետև խորին կերպով համոզուած եմ թէ Օսմանեան կառավարութեան անկեղծ դիտաւորութեանց մասին և թէ ճշմարիտ համակրութեան, որ ունին առ ձեզ ամենայն տեղ, նորէն կը կրկնեմ ձեզ հնազանդ լինել ձեր տէրութենէ ղրկուած օրինաւոր իշխանութեանց և նոցա ապաւինել առանց երկբայութեան։

«Եթէ գործերս ներեն, մտադիր եմ երկրորդ անգամ եւս այցելութեան գալ յԷրզրում և անձամբ կրկնել այս յայտարարութեանս մէջ յիշածներս։ Ի վերջ բանիս հաստատ յուսով եմ, որ դուք վստահութեամբ կը որոնիք վերոյիշեալ բառերուս ճշմարտութիւնը և ըստ այնմ կը գործէք [1])։

Ղարս, 1878 ամի օգոստոսի 24.

Գլուխ զօրաց որ ի Ղարս և ի շրջակայ գաւառս՝ գեներալ լէյտենանտ Լազարեան։

Բայց մինչև որ այս կոչը Էրզրում կը հասնէր, այստեղի հայ հասարակութեան մէջ սկսուեցին յուզմունքներ, որոնք լուրջ անհանգստութիւն պատճառեցին ռուս զինուորական իշխանութեան։

Լէօ

[1]) Ա. Երիցեան—«Մի երես Կարնոյ նորագոյն պատմութիւնից» («Փորձ», 1879, № 1)։

## ԳԱՒԱՌ

### ՄԻ ՄՈՌԱՑՈՒԱԾ ԳԻՒՂ ՋԱՒԱԽՔՈՒՄ

ՄՐԱԿՈՎԱՆ, 4 ապրիլի. Այս գիւղը բաղկացած է 55 տնից, որից 20 տունը թուրքեր են, մնացածը հայեր։ Մրակովանը գտնւում է Ախալքալաքից 35 վերստ հեռու դէպի հարաւ, Արդահան-Զալ գետի եզերքին մի բլրակի վրայ։ Գիւղացիք պարապում են գլխաւորապէս երկրագործութեամբ և անասնապահութեամբ. ունին նաև պարտէզներ և բանջարանոցներ։ Պարտէզների և բանջարանոցների վրայ կանոնաւոր հոգս, խնամք չեն գործադրում, որ կարողանան լաւ արդիւնք ստանալ։ Պարտէզներում կան տանձենի, խնձորենի, ծիրանի, թթենի, բալենի և սալորենի. բանջարանոցներում բուսնում է վարունգ, սոխ, համեմ, կոտեմ, բազուկ, գետնախնձոր, դդում և ճակընդեղ. գիւղացիք ընդհանրապէս աղքատ են. այժմ, որ պատերազմի պատճառով աշխատող երիտասարդ ձեռքերից զրկուած են, աւելի խեղճ դրութեան մէջ են գտնւում։ Այս գիւղի օդը զով և կլիման անչափ առողջարար. ազգաբնակութիւնը վերջին ռուս-թրքական պատերազմից յետոյ Ծալկայից և Ալէքսանդրապոլից գաղթելով բնակութիւն են հաստատել այս գիւղում։ Մրակովանը անջատուած է հայաբնակ վայրերից և շրջապատուած է բազմաթիւ թուրք գիւղերով։ Գիւղում դպրոց չկայ. ժողովուրդը բառի բուն նշանակութեամբ խարխափում է խաւարի մէջ, մոռացած հայ լեզուն, հայ դպրոցը՝ յուսահատուած, անմխիթար օրեր է անցկացնում։ Մրակովանը, որ ընկած է Ջաւախքի ծայր անկիւնում, իսպառ մոռացութեան է մատնուած։ Այս գիւղը, որ կարող է տալ 40-50 աշակերտ, դպրոց չլինելու պատճառով, երեխաները մեծանում են անգրագէտ։ Հոգևոր բարձր իշխանութիւնը թող ուշք դարձնի այս մոռացուած գիւղի վրայ և նպաստ հասցնի գիւղում դպրոց բաց անելու համար [1])։

Արսէն քահ. Բլրցեան

* * *

Ն. ԲԱՅԱԶԻԴԻ շրջանի գաղթականների հայ ուսուցիչներից մէկը գանգատուելով ժամանակիս թանգութեան առթիւ, որի պատճառով նեղ վիճակի մէջն է մնացել և իմանալով, որ շատ տեղեր ուսուցիչների ռոճիկները աւելացուած են, խնդրում է Հայ. Կեն. Կոմիտէից իւր և նմանների վրայ ուշադրութիւն դարձնել։

* * *

ԲԱՇ ԳԻՒՂ (Բասենի շրջ.), մարտի 30-ին.
Գարնան բացուելուն պէս շրջանիս բասենցի գաղթականները՝ յաղթելով ամեն մի խոչնդոտ՝ շարան-շարան գնում են դէպի հայրենիք, իրանց աւերակ բները վերաշինելու, նորոգելու։

Չնայած որ բաւական ժամանակ է անցել գարնանացանքի սկզբից, բայց խեղճ հայ փախստականը ինչ ունի, որ ինչ ցանէ։ Ձեռքը ծալած, խեղճ ու անճար մնացած, ստիպուած դիմում է տեղացիներին, բայց խեղճ տեղացին գաղթականից աւելի ծանր պայմաններումն է գտնւում. էլ ո՞րտեղից պիտի կարողանայ օգնել իր դիմողին։

Այստեղ դեռ են խաղում որոշ անհատներ, այսպէս անուանուած գիւղական տղրուկները։ Կորցրած ամեն մի խիղճ և մարդկային զգացումք, դիմում են ամենազազրելի միջոցների։ Առիթից օգտուելով օր աւուր բարձրացնում են հացահատիկի գինը։ Ներկայիս ցորենի պուդը ծախւում է 5 ռուբլով, իսկ գարին 2 ռուպլով, այն էլ հազար ու մի խնդիրքով։ Իսկ միւս անհրաժեշտ կենսամթերքների գները մեր չարչի-վաճառականները այնպիսի գների են հասցրել, որ խիղճը այդտեղ էլ գոյութիւն չունի։

Բասենցի գաղթականին շատ շուտով պէտք է օգնութեան

[1]) Նպաստ ստանալու համար հարկաւոր է, որ նախ ինքը հասարակութիւնը սկսի գործը ապա թէ խնդրագրով դիմի Ամենայն Հայոց Հայրապետի դպրոցական ֆոնդից և Կ. Հ. Բ. Ը-թեան նպաստ ստանալու համար։
Խմբագր.

ձեռք կարկառել, ազատել սպառնացող վտանգից—սովից։ Ամեն մի դանդաղում կարող է կործանարար հետեւանք ունենալ։ Մի ամիս յետոյ արդէն ամեն ինչ ուշ կըլինի։

Նաթօ

***

## ՆԱՄԱԿ ԱԽԱԼՑԽԱՅԻՑ

*Ապրիլի 1-ին.*—Կիրակի, մարտի 27-ին, քաղաքային վարչութեան դահլիճում տեղի ունեցաւ Կ. Հ. Բ. ընկ. տեղական ճիւղի անդամների ընդհանուր ժողովը՝ ճիւղի 1915 թուի ելք և մուտքի հաշիւները քննել-հաստատելու, Օսլա-լուացարանի արհեստանոցի նախահաշիւը հաստատելու և պաշտօնատար անձերի նոր ընտրութիւններ կատարելու համար։ Ժողովի սկզբում, վարչութեան նախագահող՝ Խ. Թէխմիչեանի առաջարկութեամբ ժողովականները ոտքի կանգնելով յարգեցին վարչութեան հանգուցեալ անդամ Ստ. Ագնաւուրեանի յիշատակը, որի փոխարէն այս ժողովում նոր անդամի ընտրութիւն պէտք է կատարուէր։ Հանգուցեալ Ագնաւուրեանը շատ տարիներ վարել է վարչութեան անդամի պաշտօնը և իւր ուժերը ներածին չափ ծառայել ընկերութեան։ Ժողովը բացի Ագնաւուրեանից յարգեց նոյնպէս հանգուցեալ Մատթէոս Ազարէգեանի և այլոց յիշատակները, որոնց անունով ճիւղս այս տարի նուէրներ է ստացել։ Անցնելով հերթական հարցերին, ժողովի նախագահ ընտրուեց Ստ. Ստեփանեանը, իսկ քարտուղար՝ Պարը. Տէր-Յակոբեանը։ Նախ կարդացուեց ճիւղի 1915 թուի ելք և մուտքի հաշիւը, վերստուգիչ յանձնաժողովի քննութեան զեկուցագիրը և վարչութեան տեղեկագիրը։ Ելք և մուտքի հաշուից երեւաց, որ ճիւղը այդ տարին մուտք է ունեցել 4087 ռ. 41 կ., ելք՝ 1753 ռ. 38 կոպ.։ Մնացորդ առ. 1-ն յունւ. 1916 թ. 2334 ռ. 03 կ., որից 1329 ռ. 16 կոպէկը ճիւղի գումարն է, իսկ 1004 ռ. 87 կոպ. «Հայրիկեան» ֆոնդի։ Վարչութեան տեղեկագրից երեւաց, որ յիշեալ տարում վարչութիւնը պատերազմից վնասուածների օգտին գործունէութիւն չէ ցոյց տուել, նրա համար որ իւր նախաձեռնութեամբ քաղաքումս բոլոր հայ հաստատութիւնների ու ընկերութիւնների մասնակցութեամբ այդ նպատակի համար ընտրուել է առանձին մարմին «Հայկական կոմիտէտ» անունով, որը մինչև այսօր էլ գոյութիւն ունի և գործում է յատկապէս պատերազմից վնասուածներին օգնութիւն հասցնելու համար։

Ժողովը լսելով վարչութեան տուած տեղեկութիւնները և բացատրութիւնները, միաձայն անփոփոխ հաստատեց այդ հաշիւը և ապա անցնելով ճիւղի Օսլա-լուացարանի արհեստանոցի նախահաշուի քննութեան՝ նոյնպէս հաստատեց անփոփոխ։ Այդ արհեստանոցի բացման համար ծախս է պահանջւում 1100 ռուբլի։

Ժողովը թոյլ տուեց վարչութեան ճիւղիս անշարժ կայքի՝ քաղ. ընթերցարանի շինութեան հարաւային մասում, քարեայ պատնէշներ շինել տալու, որպէսզի մօտից հոսող «Մարտա-չայ» առուակի յորդանալուց առաջացած վտանգից թէ շինութիւնը և թէ կողքին եղած ընկերութեանը պատկանած հողամասը անվնաս մնայ։ Մնացեալ հարցերը յետաձգուեց յաջորդ ժողովին, որ կայանալու է զատկական տօներից յետոյ։

—Շաբաթ, մարտի 26-ին, քաղ. ժողովարանի դահլիճում, քաղաքիս արական պրոգիմնազիայի աշակերտները, յայտնի թատերասէր անտառապետ Կարգալովի ղեկավարութեամբ խաղացին Գոգոլի «Վերաքննիչ» կոմեդիան, որի արդիւնքը յատկացուած էր պատերազմի մէջ եղած զինուորներին և վիրաւորներին։ Դահլիճը լիքն էր հանդիսականներով և խաղը բաւականին սահուն անցաւ։ Իսկ կիրակի, մարտի 27-ին, քաղաքային այգում, տեղական կանանց կոմիտէտը, նոյն նպատակով կազմել էր զբօսանք և վիճակախաղ։

—Դերասան Սեւումեանը, իւր կնոջ Լիւսի Սեւումեանի հետ քաղաքս է եկել և այսօր, ամսիս 1-ին, ժողովարանում տեղական սիրողների մասնակցութեամբ տալիս է ներկայացումն։ Խաղալու են Աճարոնեանի յայտնի «Արցունքի հովիտը» դրաման, որի մէջ Ասլանի դերը կատարում է ինքը Սեւումեանը։

—Մարտի 30-ի գիշերը, անյայտ գողեր մտել են քաղաքիս մի հրէայի մանուֆակտուրային խանութը և մօտ 1000 ռուբլու ապրանք գողացել։ Առ այժմ ձերբակալուած ոչ ոք չկայ։

—Մարտի 27-ին կրկին նշանակուած էր տեղական «Հայկան կոմիտէտի» անդամների ժողով՝ մի քանի կարեւոր խնդիրներ քննել-որոշելու համար։ Սակայն կրկին չը հաւաքուելով ժողովը չըկայացաւ։ Ինչպէս լսում ենք, դեկտեմբերից մինչև հիմա յիշեալ կոմիտէտի ոչ մի նիստ տեղի չէ ունեցել անդամների մեծամասնութեան թերի և սառն վերաբերմունքի պատճառով։ Այժմ որոշուած է հրաւիրել հասարակութեան և իրանց ընտրող հաստատութիւնների ներկայացուցիչներին ընդհ. ժողովի նոր ընտրութիւն կատարելու համար։ Այս բանը վաղուց պէտք էր անել և չըթողնել մի համակրելի ու կարեւոր մարմին, որի գոյութիւնը ներկայ խորհրդաւոր ու պատմական ժամանակին անհրաժեշտ է։

Քաղաքումս վախճանուած Սահակ Սարաֆեանի յիշատակին պսակի փոխարէն, նրա կինը՝ Խանում, եղբայրները՝ Սիմէօն և Աւետիս Սարաֆեանները և աներորդի Գէորգ Արարեանը նուիրեցին Կ. Հ. Բ. Ընկ. Ախալցխայի ճիւղին 25-ական ռուբլի։

---

## ՏԱՐԵԳԻՐ ԲԱՐԵԳՈՐԾՈՒԹԵԱՆ

—

Հայ Կենտր. Կոմիտէն շնորհակալութեամբ ստացաւ Թեմիս սրբ. առաջն. Մեսրոպ եպիսկոպոսի միջոցով Պետրոգրադից ինժեներ պ. Շմաւոն Մարկովիչ Աստուածատրեանից հազար ռուբ. (1000 ռ.) բացառապէս Ալաշկ. Ղարաքիլիսայի սննդատու կայանում երեխաների վրայ ծախսելու, որի մանրամասն հաշիւը իւր ժամանակին կուղարկուի պարոնին։

***

«Մի բաժակ թէյ», Գոլովինսկիյ պրոսպեկտ, Տէր Մարգարեանի տանը։

1916 թ. մարտի 1-ից մինչև ապրիլի 1-ը ստացուած է.

| | |
|---|---|
| Թէյ, սուրճ և այլն վաճառելուց . . . | 5863 ռ. 80 կ. |
| Թէյատանը կախուած դրամատփերից . . | 144 — 49 — |
| Ընդամենը | 6008 ռ. 29 կ. |

Ծախսուած է.

| | |
|---|---|
| Շաքարի, թէյի և այլ մթերքներ գնելու . . | 2569 ռ. 83 կ. |
| Ամանեղէնի և այլ պիտոյքների . . . | 445 — 54 — |
| Երաժշտական խմբին վճարուած է . . , | 234 — » — |
| Թէյատան բնակարանի վարձ . , . . | 300 — » — |
| Ծառայողներին ռոճիկ . . . . . | 85 — » — |
| Զանազան մանր ծախսեր . , . . | 55 — 66 — |
| Ընդամենը | 3698 ռ. 03 կ. |
| Զուտ արդիւնք | 2318 ռ. 26 կ. |

***

«Համբաւաբեր»-ի խմբագրութիւնը շնորհակալութեամբ ստացաւ պ. Ռուբէն Մ-Փ-ից 5 ռուբլի ի նպաստ տաճկահայ փախըստականների, որ և յանձնեց Կ. Հ. Բ. Ը-թեան՝ գործադրելու նպատակին։

## ՃԻՒՂԵՐ

Կ. Հ. Բ. Ը-թեան Վաղարշապատի ճիւղի Վարչութիւնը յայտնում է իր խորին շնորհակալութիւնը քոյրեր՝ Շուշանիկ, Տիրուհի և Մաքրուհի և եղբ. Յովհաննէս և Յակոբ Շամբորեաններին, որ ի յիշատակ Վարչութեանս հանգուցեալ փոխ-նախագահուհու, իրենց քոյր տիկին Վառվառէ Կոստանեանցի նուիրել են տեղական ճիւղիս երկու հարիւր (200) ռուբլի։

***

## ՆՈՒԷՐՆԵՐ

Կ. Հ. Բ. Ը-թիւնը շնորհակալութեամբ ստացել է պ. Հայրապետ Տէր-Պօղոսեանից յօգուտ Ընկ. ճաշարանի 10 ռ.

—Տիկին Զարէլ Զաւրեանից յօգուտ փախստականների 100 ձու։

—Օլգա և Աննա Տէր Դաւթեաններից յօգուտ Ընկ. ճաշարանի 20 ռ.

—Արտիւշ Մովսէսեանից յօգուտ փախստականների 10 ռ. և յօգուտ Ընկ. 5 ռ., ընդամենը 15 ռ.

—Տիկին Ե. Բարթուղովից յօգուտ չքաւորների 5 ռ.

—պ. Նիկողայոս Բաղդասարեանից յօգուտ չքաւորների 5 ռ.

—պ. Իսահակ Պապայեանից յօգուտ չքաւորների 5 ռ.

—Թիֆլիսի 1- մասն. լոմբարդից յօգ. փախստականների 19 ռ. 56 կ.

պ. Կ. Խալաթեանի միջոցով Արքունի դրամատնից յօգուտ փախստականների 25 ռ., հանգ. Վ. Եղիազարեանի դագաղի վրայ պսակ դնելու փոխարէն.

—Փոխադ. վարկի ը-թեան ծառայողներից յօգուտ փախստականների 15 ռ. 45 կ.

—Кавк Сл. ի խմբագրութիւնից յօգուտ փախստ. 197 ռ. 47 կ. և Վանի կամաւորների 19 ռ. 50 կ., ընդամ. 246 ռ. 97 կ.։

—Մ. Եղիազարեանից ի յիշատակ իւր ամուսնու՝ Վ. Ա. Եղիազարեանի 100 ռ. (Тиф. Лист-ի միջոցով)։

—Ինժ. Տէր Օհանեանից յօգուտ չքաւորների 4 ռ.

## ՆՈՒԷՐ ԳԱՒԱՌԻՑ

Թելաւ.—Կ. Հ. Բ. Ընկ. Թելաւի ճիւղի նախագահուհի տիկին Օլգա Պօղոսեանից շնորհակալութեամբ ստացուած է յօգուտ գաղթականական որբանոցի 150 ռ., գումարը գոյացել է անցի «Մի բաժակ թէյի» արդիւնքից։

***

ԳՈՐԻՍ.—Բարձր. Վահան վարդ. Տէր-Գրիգորեանից ստացուած է շնորհակալութեամբ 100 ռ., որից 50 ռ. յօգուտ փախստականների, 25 ռ. որբերի, 25 ռ. կամաւորների։ Այդ գումարը ստացուած է Բ. և Վ. Յովսէփեան ամուսիններից հանգուցեալ Մարիամի հոգեհացի փոխարէն

***

ԱԿՈՒԻՐԱՑԻՑ.—Երդուեալ հաւատարմատար Սահակ Մելիքսեդեկեանից յօգուտ փախստականների—25 ռ.

## ՔՐՈՆԻԿՈՆ

Թիֆլիս է հասել բժշկպ. Վիլիամ Հարասէլ Բրէսսի Ամերիկայի Նիւ-Եօրկ քաղաքից՝ Ամերիկահայ բժշկական Յանձնաժողովի կողմից հայ փախստական հիւանդներին օգնելու։ Բժշկապետը շուտով մեկնելու է Ալաշկերտի շրջանը Ղարաքիլիսայում գործելու. հետը բերել է հինգ սնդուկ դեղորայք։

***

Հասարակական ակումբ.—Հասարակական ակումբի հերթական երեկոյթը կայանալու է ոչ շաբաթ, այլ ապրիլի 24-ին, կիրակի օրը։ Երեկոն նուիրուելու է հայ գրող և հասարակական գործիչ Միքայէլ Նալբանդեանի յիշատակին, նրա մահուան 50-ամեակի առիթով։ Զեկուցանողը լինելու պ. Մինաս Բերբերեանը։ Զեկուցումից յետոյ տեղի կունենայ զրոյց։ Երեկոն վերջանալու է երաժշտական-գրական բաժանմունքով։

***

Հանգուցեալը Ախալցխացի էր և պատանի հասակից նուիրուած է եղել Հայաստանի ազատագրական գործին։

***

Ապրիլի 26-ին Փոխարքայի նախագահութեամբ Պալատում սկսւում է խորհրդակցութիւն Կովկասում դեմստուօ մացնելու մասին։

Խորհրդակցութեան անդամների թիւը 100-ից աւելի է։

***

Օգոստափառ Փոխարքայի կարգադրութեամբ հրաւիրւում են դեմստուօյական խորհրդակցութեան հայկական հետեւեալ երեք հիմնարկութիւններից՝ Կովկասի Հայոց Բարեգործական ընկերութեան և Բաղուայ Կուլտուրական Միութեան կողմից մէկ-մէկ ներկայացուցիչ և Հայոց Գիւղատնտեսական ընկերութիւնից 2 ներկայացուցիչ։ Կ. Հ. Բ. ընկերութեան ներկայացուցիչ ընտրուած է Խորհրդի նախագահ պ. Ս. Յարութիւնեան։

***

Հինգշաբթի օրը, ամսիս 20-ին, Թոքախտի դէմ կռուող Կովկասեան ընկերութեան Նախագահուհի, Իշխ. Մ. Թումանեանի նախաձեռնութեամբ Թիֆլիսում կատարուեց «Սպիտակ ծաղկի» օր։ Եղանակը հրաշալի էր. ծաղկավաճառութեան մասնակցում էին բազմաթիւ տիկիններ, օրիորդներ ու երիտասարդներ. քաղաքի բոլոր մասերում մի քանի տեղեր սարքուած էին քեօսկներ։ Մուտքը դեռ չէ հաշուած, բայց պէտք է ենթադրել, որ բաւականին խոշոր գումար ժողովուած կը լինի։

***

Ապրիլի 14-ին կայացաւ Հայոց Ազգ. ընկերութեան ընդհանուր ժողովը նախագահութեամբ—Մ. Օ. Արամեանցի։ Տարեկան հաշուից, որը զեկուցեց վարչութեան նախագահ Հ. Ա. Մելիքեանը, 1615 թ. եղել է 8165 ռ. 93 կ., իսկ ծախք 7,022 ռ. 12. կ.։ Իսկ 1916 թ. համար կազմուած է նախահաշիւ, մուտք ու ելք 14,059 ռ. 33 կ., որև հաստատեց ընդհանուր ժողովը։

***

Թիֆլիսի զանազան թաղերում քաղաքային վարչութիւնը ժողովրդի համար բացել է խանութներ շաքար և գետնախնձոր ծախելու համար։

***

Վաղը, երկուշաբթի, դումայում լինելու է առաջին նիստը նոր ընտիր քաղաքային իրաւասուների մասնակցութեամբ։

***

Այսօր, ժամը 11-ին ցերեկուայ նշանակուած է Թիֆլիսի քաղաքային վարկի ընկերութեան տարեկան ընդհանուր ժողով։ Կատարուելու է պաշտօնատար անձանց, ի միջի այլոց, և վարչութեան նախագահի ընտրութիւն։ Այս անգամ միակ նախագահութեան թեկնածուն համարւում է այժմեան նախագահ պ. Գ. Տէր-Աստուրեանը։

***

Ապրիլի 17-ին կայացաւ վաճառականական բանկի ընդհանուր ժողով, որը քննեց 1915 թ. տարեկան հաշիւը և այս տարուայ նախահաշիւը։

Անցեալ տարի բանկը ունեցել մաքուր օգուտ 421.960 ռ. 65 կ. ամեն մի ակցիայի ընկել է դիվիդենտ 17 ռ. 50 կ., որ կանէ ակցիայի արժէքի 7%։

***

Անցեալ կիրակի Թիֆլիսում մեծ հանդէսով կատարուեց քաջարի հայ կամաւորական խմբի վաշտապետ Արտաշէս Ստեփանեանի թաղումը, որը սպանուել է պատերազմի դաշտում, Բիթլիսի շրջանում։

***

Հաստատ աղբիւրից մեզ հաղորդում են, որ մեր քաջարի գունդը գրաւելով Սուրբ-Կարապետ, Յովհաննէս և Առաքելոց վանքը, պարզել է, որ այդ վանքերի պահարանները ու թանգարանները անձեռնմխելի են մնացել։ Թշնամին չի կարողացել նոյնիսկ հրդեհել և քանդել վանքերը։ Էջմիածնից մարդիկ են ուղարկուած վանքերի թանկագին իրերը և ձեռագրերը բերելու համար։

* * *

Բ ա թ ու մ ի ց Արժանապատիւ Մեսր. քահ. Մելեանը հեռագրով յայտնում է, որ այնտեղ հասել են այս երկրորդ անգամ 40 փախստական, որոնցից 34 որբ և 7 հասակաւոր։

# Արտաքին տեսութիւն

## ԻՐԼԱՆԴԻԱՅԻ ԱՊՍՏԱՄԲՈՒԹԻՒՆԸ

—

Ծանր փորձութիւնների ամիս հանդիսացաւ ապրիլը Անգլիայի համար։ Թէ քաղաքական և թէ ռազմական տեսակէտներից նա այս ամսում կրեց մի շարք այնպիսի անյաջողութիւններ, որոնք միանգամայն կխախտէին նրա վարկը, եթէ այն համատարած համոզումը չլինէր, որ ամէն մի անյաջողութիւնից Անգլիան միշտ դուրս է գալիս աւելի ես զօրեղացած, աւելի ես պոտեպնդուած։

Ապրիլեան փորձութիւններից ամենածանրը, ամենազգալին Անգլիայի համար հանդիսանում է Իրլանդիայի ապստամբութիւնը։

Ապստամբութեան ազդանշանը տալիս է Իրլանդիայի մայրաքաղաք Դուբլինը։ Ամսոյս 11-ի կէսօրին յանկարծ բազմաթիւ զինուած խմբեր դուրս են գալիս տներից և դիմում դէպի «Սաիֆէնագրին» պարկը։ Շուտով այդ պարկը, կից փողոցները և գլխաւոր պողոտաները դառնում են ապստամբների համար պատերազմական դիրքեր։ Ամէն տեղ բարձրանում է Իրլանդիայի ազգային կանաչ դրօշակը և ամէն կողմեր հնչում «The wearing of the green» յեղափոխական երգը։ Յանկարծակիի եկած կառավարութիւնը սկզբում չի իմանում ինչ անի, սակայն վերջը Անգլեայից եկած հրահանգի համաձայն դիմում է զինուած ուժի։ Իրլանդական Curragh կոչուած զօրանոցից են գալիս կառավարական զօրքերը և յարձակւում ապստամբների դէմ։ Սկսւում է մի տաք կռիւ, որի ժամանակ երկու կողմից էլ մի քանի տասնեակ սպանուած և վիրաւորներ են լինում։

Դուբլինի հետ միասին ապստամբութիւն է ծագում և Իրլանդիայի այլ վայրերում և գրեթէ ամենուրեք տեղի են ունենում արիւնահեղ ընդհարումներ զօրքերի հետ։

Սակայն Անգլիական կառավարութիւնը կարողանում է բաւական դիւրութեամբ ընկճել այս ապստամբութիւնը։ Դրա պատճառները մի քանիսն են։ Նախ՝ շնորհիւ պատերազմական վիճակի՝ կառավարութիւնը Իրլանդիայում իր հրամանատարութեան տակ ունէր աւելի զօրք քան երբ և իցէ նման դէպքերում ունեցել է։ Երկրորդ՝ ապստամբները բաւարար չափով չէին զինուած։ Ապստամբութեան հենց սկզբին բռնուեց մի գերմանական նաւ, որ հոլանդական դրօշակի տակ զէնքեր էր բերում Իրլանդիա։ Նաւը չցանկանալով անձնատուր լինել՝ բարձրացրեց գերմանական դրօշակ և ընկղմուեց. իսկ նրան ուղեկցող սըր Ռօջեր Կեզմենտը, ներկայ ապստամբութեան պարագլուխներից մէկը, ձերբակալուեց։ Վերջապէս կառավարութեան համար նպաստաւոր հանգամանք էր հանդիսանում և այն, որ այս անգամուայ ապստամբութիւնը բացառապէս մի յեղափոխական կուսակցութեան գործ էր։ Մնացած Իրլանդիայի հասարակութիւնը ապստամբութիւնը կամ անժամանակ էր համարում և կամ դէմ էր։

Պաշտօնական շրջաններում Իրլանդիայի ապստամբութիւնը հռչակւում է, իբրև գերմանական ագիտացիայի արդիւնք։ Անկասկած գերմանացիք, որ բոլոր թշնամի երկրներում ներքին խռովութիւններ յարուցանելու համար ահագին ջանքեր են գործ դընում, Իրլանդիան աչքաթող չեն արել։ Ներկայումս պարզուած է, որ նրանք զէնք և նիւթական միջոցներ են տուել Ռօջեր Կեզմենտին՝ ապստամբութիւնը գլուխ բերելու համար, որ նրանք Գերմանիայում Իրլանդիայի գերիներին ամէն կերպ աշխատել են գրաւել իրենց կողմը և վերջապէս, որ նրանք Ամերիկայի Իրլանդական շրջանների մէջ բուռն ագիտացիա են վարել ընդդէմ Անգլիայի՝ երաշխաւորելով Իրլանդիայի անկախութիւնը ապստամբութեան դէպքում։ Սակայն այս բոլորով հանդերձ սխալ կը լինի Իրլանդիայի ապստամբութիւնը վերագրել գերմանացիների ազդեցութեանը։ Իրլանդիան քաղաքական կռիւների մէջ շատ է մարզուած և հասունացած, որպէսզի կարելի լինի նրանց գերմանական ագիտացիայի զոհ համարել։

Իրլանդական ապստամբութիւնը արդիւնք է այն սարսափելի ճնշումների, որ գործադրել են անգլիացիք այս դժբաղդ կղզու վրայ Կրոմվէլի «սարսափի օրերից» սկսած մինչև անցեալ դարու վերջերը։ Այդ երկիրը իր իշխանութեան տակ պահելու համար՝ անգլիացիք կանգ չեն առել ոչ կրօնական հալածանքների, ոչ հողերի բռնի գրաւման, ոչ բռնի գաղթեցման և ոչ իսկ ահաբեկումների (տերրոր) առաջ։ Այս քաղաքականութիւնը այն հետեւանքն է ունեցել, որ Իրլանդիայի կելտ ազգաբնակութիւնը գրեթէ կիսուել է և ծայրայեղ թշուառութեան մատնուել։ Իրլանդացիք, ի հարկէ, լուռ հանդիսատեսի դեր չեն կատարել այս հալածանքների հանդէպ։ Նրանց ֆէնիանները White boys և moon ligther-ները ահաբեկման գործողութիւններով շատ անգամ են հակահարուած տուել բռնաւորներին, բայց դրանք էլ էական փոփոխութիւններ չեն կարողացել մտցնել ժողովրդի ծանր կացութեան մէջ։

Վաթսունական թուականներից Անգլիայի յառաջադէմ տարրերի մէջ սկսւում է մի շարժում յօգուտ իրլանդացիների։ Գլադստոնը, որ այս շարժման ոգին էր հանդիսանում, մի շարք մասնակի վերանորոգումներից (ռեֆորմ) յետոյ առաջ է քաշում home rule-ի Իրլանդիայի ներքին ինքնավարութեան հարցը. սակայն պաշտօնական Անգլիան ամբողջ 60 տարի կատաղօրէն դիմադրում է այդ ծրագրին։ Վերջ ի վերջոյ, պատերազմի առաջին օրերին ընդունուեց home rule-ի ծրագիրը բաւական աղճատուած ձևով և այն էլ այն պայմանով, որ գործադրութիւնը պէտք է յետաձգուի մինչև պատերազմի վերջը։

Այսպիսի խառը հանգամանքներում յայտարարուեց պատերազմը։ Իրլանդական ազգային կուսակցութիւնը, որ երկար ջանքերից յետոյ, շնորհիւ ազատամիտ կառավարութեան օգնութեան գլուխ էր բերել home rule-ի ծրագիրը՝ անմիջապէս յայտարարեց իր լիդերի՝ Ջօն Ռէդմօնդի բերանով, որ Իրլանդիան պէտք է կռուի անգլիացիների հետ միասին գերմանացիների դէմ։ Սակայն այս յայտարարութիւնը պարտադիր չէր հասարակութեան այն զգայուն տարրերի համար, որոնք ժողովրդական ցաւը անձնական ցաւի զգացմունքով են ապրում։ Նրանք մի օրից միւսը չէին կարող մոռանալ անգլիացիներից ստացած հարուածները և դարերով կուտակուած ատելութիւնը բռնկուեց, բռնկուեց հենց այն րոպէին, երբ դարաւոր թշնամին ինքը ծանր կացութեան մէջ էր գտնւում... Ահա այս ատելութեան մէջ են թաղնուած իրլանդական վերջին շարժման արմատները և ոչ թէ գերմանական ագիտացիայի մէջ։

Իրլանդիայի ապստամբութիւնը ճնշուած է այսօր, բայց այն մի բարոյական հարուած է հանդիսանում ազատասէր Անգլիայի քաղաքական պրեստիժին։ Եւ այս հարուածը լաւ կլինի, որ չմոռանան այն մեծ պետութիւնները, որոնք լայն օրերին երբէք հաշուի չեն առնում իրենց իշխանութեան տակ ընկած փոքր ժողովուրդների շահերն ու զգացմունքները։

Ա. Ջամալեան

### ՏՈՒԱՆՍԷՆ ԶՕՐԱՎԱՐԸ ԻՒՐ ԳՆԴՈՎ ԱՆՁՆԱՏՈՒՐ

*Կուդէլ-Ամարում անգլիացւոց շուրջ 9000 զինուորից կազմուած զօրագունդը զօրավար Տուանսէնի առաջնորդութեամբ, որ 143 օր շրջապատուած էր օսմանցիներից, անձնատուր է եղել սովից ստիպուած, կանխաւ ոչնչացնելով և փչացնելով ռազմական մթերքներն ու թնդանօթները։*

# ՏԱՃԿԱՀԱՅԵՐ

## ՀԱՅՈՑ ՀԱՐՑԸ ՍՈՐԲՈՆԻ ԴԱՀԼԻՃՈՒՄ

Լրագիրը բերաւ աւելի լայն քաղուածքներ Հայոց հարցի առիթով արտասանուած ճառերից։ Հնչեց լի մարդասիրական բուռն զգացմունքով Ֆրանսիայի ձայնը, այն Ֆրանսիայի, որի սիրտը նոյն իսկ այդ պահուն արնաքամ էր լինում Վերդէնի պատերի տակ։

Այժմ, երբ լսեցինք Ֆրանսիայի սփոփիչ և սրտառուչ կարեկցութեան խօսքը նրա փայլուն ներկայացուցիչների շրթունքներից, պարզ է, թէ ինչու Հայոց հարցը այնքան մօտ է բարեկամ դաշնակիցների սրտին, թէ ճակատագրի իղձերի ու ձգտումների ինչպիսի կապեր են կապում մեր սիրտը նրանց սրտի հետ։ Եւ պարզ է նոյնպէս, թէ ինչու Ֆրանսիայի փայլուն ներկայացուցիչներից մէկը յայտնեց այդ ժողովին, որ իր հայրենիքը հայկական հարցին ֆրանսական բնոյթ է տալիս։

Բերում ենք այստեղ «Temps»-ի № 20001-ում տպագրուած քաղուածքները Սորբոնի ժողովի ճառերից թեթև կրճատումներով։

Ժողովին նախագահում է պ-ն Պօլ Դէշանելը՝ պատգամաւորների պալատի նախագահը, որը բնորոշում է ժողովի միտքն այսպէս.

«Մենք հաւաքուել ենք այստեղ ճշմարտութեան մի մեծ գործ կատարելու համար».

և շարունակում է.

«Մի ժողովուրդ՝ խելօք, աշխատասէր, քաղաքակրթուած, իր բնակութիւնը հաստատեց երկրի ամենապատկառելի վայրերում, միացնելով իր ոգու ասիական նրբութեան հետ և եւրոպական ոգին, առաջնապահ դունդը հանդիսացաւ յոյն-հռոմէական քաղաքակրթութեան, որը իր հզօրութիւնն ու փառքը ճաշակելուց յետոյ՝ ընկաւ օսմանեան ծանր լծի տակ, և որի գոյութիւնը այդ օրից սկսած ուրիշ ոչինչ չէ, բայց եթէ ոչ մի յարատև տանջանք, երբեմն գերեզմանային լռութիւն, ընդհատուած հեռուից-հեռու ժամասացութեան սաղմոսերգութեամբ և կորցրած ազատութեան վերակոչումներով. երբեմն էլ կոտորածներ, հրդեհների մոխրակոյտներ, թալան, առևանգում, հալածանք, բռնի կրօնափոխութիւն և ոճրագործութիւն ամեն տեսակի։ Հալածուած հայերը՝ թափառելով ամենուրեք, Եւրոպայից օգնութիւն աղերսեցին և Եւրոպան յանձն առաւ Հայաստանի ապահովութեան երաշխաւորութիւնը։

Դատարկ խոստումներ։

Այն ժամանակ բոլոր երկրներից լսելի եղաւ բողոքի ամենից ազնիւ ձայներ, բայց ամեն բողոքի պատասխանում էին նոր և նոր ոճիրներով այս նահատակուած հերոս ժողովրդին, որի դատը դառնում էր հանրամարդկային խայտառակութիւն (սկանդալ)։

Նախ և առաջ Գերմանիան է, որը պատասխանատու է այս եղեռնագործութիւններին։ Գերմանիան էր՝ Բեռլինի դաշնագրի տակ ստորագրողը, որը խախտեց իր պարտականութիւնը, թոյլ տալով Թիւրքիային սրախողխող անել հայերին, ինչպէս և Գերմանիան էր Բելգիայի անձեռնմխելութեան երաշխաւորը, որը աւերակի կոյտերի վերածեց այդ երկիրը։ Եւ այն պահուն, երբ նա Հաագի միջազգային ժողովում ճիգ էր թափում տապալել միջազգային իրաւարարութեան (արբիտրաժի) լիազօրութիւնը, որպէս զի այդպիսով շատացնի պատերազմի հնարաւոր պատճառները, մինչդեռ մեր լիազօրները աշխատում էին ոչնչացնել այդ հնարաւորութիւնը։ Այդ պահուն նա քօղարկում էր Արևելքում այն բոլոր բռնութիւնները, որոնք կարող էին յագուրդ տալ նրա անծայր ցանկութիւններին»։

Գերմանիայի դիմակը պատռելուց յետոյ հռետորը բացականչում է.

«Համբերութիւն, Ֆրանսիա. դու՝ որ քո որդիների վեհ հերոսութեամբ նորից գտել ես քո արժանի տեղը։ Ֆրանսիան կարող է ասել Գերմանիային. «Դու նետում ես ծաղիկ երիտասարդութիւնը և քո վաղեմի իղձերը անմիտ կոտորածի մէջ,—դու մոլորուել ես։ Դու երևակայել ես Ֆրանսիան իբրև մի ազգ, որը երևում է հանրամարդկային գաղափարների փրփուրների վրայ, որի արտաքին խաղաղ երեսը թագցրել էր քեզնից իսկական Ֆրանսիան։ Ֆրանսիան, որին շռայլել ես այնքան արհամարհանք, երևան է եկել Մարնի մարտերում, Գրան-Կուրոնի մօտ, Իզէրի վրայ, Վերդէնի ամրոցներում, աւելի քաջարի, աւելի հզօր քան երբէք»։

Հռետորը վերջացնում է իր ճառը բուռն ծափահարութիւնների տակ հետևեալ խօսքերով.

«Հեռու չէ այն օրը, երբ ազատուած Ալզաս-Լոտարինգիան մեզ հետ կը տօնի Հայաստանի ազատութիւնը»։

Խօսում է ժողովրդական լուսաւորութեան նախագահ պ-ն Պէնլևէն։

«Երբ հինգ հարիւր տարուց աւել սրանից առաջ ասիական ամենաբարբարոս աշխարհակալ Լանկթամուրը հասաւ հարիւր հազար վարդենիների քաղաքին, Սըւազի՝ Հայաստանի այդ ադամանդին, սարսափահար բնակիչներն ուղարկեցին աւերիչի առաջ նրա գութը շարժելու համար, հազարաւոր երեխաներ կապոյտ զգեստներով, ձեռներին ծաղիկներ։

Կաղ Թիմուրը երկար զննեց իր չար հայեացքով այդ անմեղ զօրքը, յետոյ հրամայեց իր մոնղոլ հեծելազօրքին նետուել և այդ մանուկներին կոխկրտել ձիերի սմբակների տակ։

Այս պատմուածքը յիշատակում է մեզ իբրև փաստ ամենահրէշաւոր ոճրագործութեան, որ կատարուել է մարդկութեան դէմ մի ամենաբարբարոս ժամանակաշրջանում և որը մեզ թւում էր ինչպէս մի ցնորական երազ։ Այժմ այդ երազը վերստին իրականութիւն է։ Կոտորածների այն աղջամուղջը, որը տարուց ի վեր արնաներկ է անում ամբողջ Հայաստանը, հաւասարւում է—ինչ եմ ասում—գերազանցում է իր ծաւալով և բարբարոսութեամբ ամենասոսկալի հեքիաթները բոլոր դարերի, բոլոր պատմութեանց։ Այժմ Գերմանիան կարող է պարծենալ իր տխրահռչակ գործով, որի այլանդակ փառքը գերազանցում է Լանկթամուրի փառքից։

Յետոյ նախարարը ապացուցանում է, թէ ինչպէս հայերի ոչնչացման գործը առաջ է տարուել գիտական մեթոդներով, մի ինչ-որ վայրենի ու խելառ յամառութեամբ։ Նա տալիս է կոտորածների սրտաճմլիկ պատկերը իրանց զարհուրելի մանրամասնութեամբ, թւում է մարտիրոսացած ազգի նահատակների անվերջ շարքը, տանջանքն ու տառապանքը, որոնք նշմարում են գերմանական քաղաքակրթութեան արարողութիւնը Փոքր Ասիայում։

Անչափ պերճօրէն ապացուցանելով Գերմանիայի ձեռքի ու նրա կազմակերպութեան տխրահռչակ հրաշքները մի ամբողջ ազգի ոչնչացման գործում՝ Պօլ Պէնլևէն պնդում է, որ այս բոլորը դարձել հետևանք է կեանքի վերածած պանգերմանական նշանաբանի (դէւիզի), որը կոչում է.

«Գերմանիան ամեն բանից վեր»,—նոյնիսկ արեան առուների վրայով, արեան հեղեղների վրայով։ Թող մի խաղաղ ժողովուրդ իսպառ բնաջնջուի, միմիայն թէ Բաղդադի երկաթուղային գիծը դառնայ մի լաւ գործ,—այդպէս էր մտածում հանրագեր-

մանականութեան (պանգերմանիզմի) բազմագլխեան վիշապը (հիդրան)։ Հայ ժողովուրդը գտնւում էր գերմանական ֆինանսի ճանապարհի վրայ, նա պիտի ոչնչանար ազատելու համար այդ ճանապարհը։ Բայց որքան էլ ծանր, կործանիչ էր հարուածը, հայ ժողովուրդը չի պարտուել նրա տակ»։

Բեմ է բարձրանում Անատոլ Ֆրանսը՝ «Ֆրանկ-օտարազգի բարեկամութիւնների» ընկերութեան նախագահը։ Նրա ճառը՝ «Temps»-ի կարծիքով, լի է գրական ճոխ գեղեցկութեամբ, որից լրագիրը բերում է միմիայն հետեւեալ հատուածները.

«Հայաստանը յիշում է—ասաց պ. Ֆրանսը—Աբդուլ-Համիդական կոտորածները, որոնք արեան մէջ խեղդեցին ամբողջ Հայաստանը։ Մի քանի ձայներ միմիայն լսելի եղան ամբողջ Եւրոպայում, ձայներ բողոքի ու դժգոհութեան մի ժողովրդի խեղդամահ անելու դէմ։ Այժմ պէտք է, տիկիններ և պարոններ, որ ֆրանսացիների ներկայ համաժողովը յայտնի այս մեծ ու ազնիւ վշտի մէջ տանջուող ժողովրդին Ֆրանսիայի հանդիսաւոր ցաւակցութիւնը։ Մենք կը կատարենք այստեղ այս սուրբ պարտականութիւնը։ Յայտնենք Հայաստանին և նրա փայլուն տարաբախտներին մեր յարգանքները։ Մենք նրան պարծանքով ենք յիշում այն անյաղթ սիրոյ համար, որը կապում է նրան մեր քաղաքակրթութեան հետ։ Նրա պատմութիւնը ամփոփում է այն դարաւոր ճիգը, որը գործադրել է նա պահպանելու համար Հռովմի ու Հելլադայի մտքի ու բարոյականութեան ժառանգութիւնը։ Եւ նա պաշտպանեց այդ ժառանգութիւնը իր զէնքով ու օրէնքներով։ Յաղթուած, սարկացած՝ այնուամենայնիւ նա պահում է իր սրտում կրօնական սրբութեամբ այդ բարձր քաղաքակրթութեան յիշատակը. և կարող ենք ասել, որ այս պահուն, այս անօրինակ սարսափների մէջ, կէս միլիոնից աւել հայեր նահատակուեցին մեր դատի համար և մեր անունը իրանց շրթունքներին»։

Տալով հայ ժողովրդի մասսայական կոտորածների սրտաճմլիկ տեսարանը՝ հռետորը բացականչում է.

«Հայաստանը հոգեվարքի մէջ է. բայց նա կը վերածնուի։ Այն քիչ արիւնը, որը մնում է իրան, անգնահատելի է, որից պիտի ծնուեն քաջարի հերոսների գալիք սերունդներ։

«Մեր դաշնակիցների յաղթութիւնից յետոյ, որը ճշմարտութեան և ազատութեան յաղթանակն է, դաշնակիցները ունեն մեծ պարտականութիւններ կատարելու։ Եւ ամենասուրբը դրանցից այն է, երբ մարտիրոսացած փոքրիկ ազգին՝ Բելգիային ու Սերբիային՝ կը տան կեանք և ազատութիւն, երբ կապահովեն Հայաստանի գոյութիւնն ու անկախութիւնը։ Թեքուելով նրա մահիճի վրայ, դաշնակիցները նրան կասեն. «Քոյր իմ, բարձրացիր. մի տանջուիր այլ եւս։ Այժմ դու ազատ ես ապրելու քո հանճարի և քո հաւատի տնօրինութեամբ»։

Ժողովը փակւում է հետեւեալ օրհներգով, հեղինակութիւն ֆրանսացի բանաստեղծի, որը երգւում է ջերմ ծափահարութիւններով.

### ՀԱՅՈՑ ՕՐՀՆԵՐԳ

**Հայաստան**

Որտեղ եղեմն էր մարդկութեան,
Մարդկանց ցեղի չքնաղ այգի,
Օրհնուած երկիր մեր նախնիքի,
Ո՛, դրախտ պայծառ
Հայրենի վայր։

Արքայ և զօրք
Անվախ հերոսք,
Տեսել են միշտ
Քո ցաւ, քո վիշտ.
Դարձեալ կը գան
Միշտ քեզ պաշտպան,
Քո սուրբ վայրի,
Քո հանճարի։
Նրանց կուղեկցենք
Զէնքով և՛ մենք,
Հզօր պաշտպան
Ազատութեան։

Գ. Օհանջանեան

### ՀԱՅԿԱԿԱՆ ԿՈՏՈՐԱԾՆԵՐԻ ԽՆԴԻՐԸ ԳԵՐՄԱՆԻԱՅՈՒՄ ԵՒ ԼԻԲԿՆԷԽՏԸ.

Յունուարի 1-ից այս տարուայ Բեռլինում կառավարութիւնը արգելեց տպել լրագրերում «Սպարտակի նամակներ» վերնագրով յօդուածները։

Այդ անուան տակ թագնուած է Գերմանիայի ռէյխստագի անդամ Լիբկնէխտը։

Այժմ այդ նամակները ձեռագիր մեքենայով տպուած ուղարկւում են զանազան անձերի Գերմանիայում պոստով փակ ծրարներում։

Նամակներից երեքը հասել են և «Ռուսկիյէ Վէդոմոստի» թղթակցին՝ պ. Լուրիէյին, Ստոկհոլմ։

Նամակներից մէկում անանուն հեղինակը պաշտպանում է Լիբկնէխտի հարցապնդումն ռէյխստագում հայոց կոտորածների մասին, որ նա արել է այս յունուարի 14-ին։

Լիբկնէխտը դիմելով կառավարութեան ռէյխստագում ասել է հետեւեալը.

«Տաճկաց կառավարութիւնը սարքեց հայկական զարհուրելի կոտորածները։ Ամբողջ աշխարհն այդ գիտէ և ամբողջ աշխարհը այդ ոճրագործութեան համար յանցաւոր է համարում Գերմանիային. ուրիշ կերպ բացատրել հայկական կոտորածները անկարելի է, քանի որ Տաճկաստանը կառավարում են, իբրև միահեծան տէրեր, գերմանական սպաներ։ Միայն Գերմանիան այդ մասին տեղեակ չէ, որովհետև կառավարութիւնը ծածկում է, իսկ մամուլը կատարելապէս ճնշուած և սարկացուած է»։

Լիբկնէխտը իր հարցապնդումով Գերմանիայի խայտառակ գործունէութեան մասին կատարեց երախտագիտութեան արժանի գործ։

Գերմանական կառավարութիւնը և նրա տիրահաչակ կայզրի կատարած քամահելի գործի վարագոյրը սկսել է բացուել և Գերմանիայում։

Լիբկնէխտը պատկանում է գերմանական այն ընկերվարականների շարքին, որոնք կորցրել են իրենց յոյսը Գերմանիայի յաղթութեան մասին և խորհուրդ են տալիս իրանց կառավարութեան՝ խաղաղութեան դաշն կապել, որպէսզի Գերմանիան չ'ոչնչանայ իբրև մեծ պետութիւն։

Տիգրան Աթարբէգեան

### ՏՐԱՊԻԶՈՆԻ ԿՈՏՈՐԱԾԻ ԱԿԱՆԱՏԵՍ ԵՐԿՈՒ ՀԱՅ ՊԱՏԱՆԻ

ՆՈՎՈՐՈՍԻՅՍԿ.—Ապրիլի 13-ին տեղս բերին 13 հոգի գերիներ, իբր տաճիկներ, բռնուած առագաստանաւում, Կերասոնի և Տրապիզոնի ծովեզրեայ շրջանում։

Այդ գերիների մէջ յայտնուեցին երկու հայ երեխաներ՝ մէկը 14 տարեկան Սուրէն Թաճմաչեանց, իսկ միւսը 10 տարեկան Սուրէն Թեփեռնճեանց։

Երկուսն էլ տրապիզոնցի են, յայտնի հայ վաճառականների զաւակներ, բռնի կերպով թիւրքացրած։ Սուրէն Թեփեռնճեանի հայրը յայտնի քաջ մարդ է եղել. տաճիկ կառավարութիւնը ցանկանում է

հաւատին պինդ մնում. ապրէս, հայաստանցի եղբայր… Սիրտս ասում է՝ արի, Վարդանին մի բոթիլ գինի փէշքէշ արա, որ տանի թաթախուելիս խմի իրա նշանածի ու բալիկի կենացը։ Հ՞ը, ինչ կասես…

Բամալեանց Ս.

(Վերջը յաջորդ համարում)

Վ ր ի պ ա կ ն ե ր.—«Համբաւաբեր»-ի № 13-ի «Տարեգիր բարեգործութեան» բաժնում «Առաքելեան»-ի փոխարէն պէտք է լինէր «Տէր-Առաքելեան»։

Այս համարի քրոնիկոնի բաժնում Արտաշէս Սուճեանի Թաղման լուրը կարդալ այսպէս. սկիզբը լուրի երկրորդ էջում, վերջաւորութիւնը առաջին էջում։

Խմբագիր՝ ՍԱՄՍՈՆ ՅԱՐՈՒԹԻՒՆԵԱՆՑ
Հրատարակիչ Կ. Հ. Բ. ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ

# Յայտարարութիւններ

## ԱՂԵՔՍԱՆ ՔԱԻԱ՛ ԵԱՆԻՆ

Կ. Հ. Բ. Ընկերութեան գրասենեակում ստացուել է Ամերիկայից մի նամակ և մի տոմս Սրխանդելսկից մինչև Ամերիկա ձեր անունով։ Խնդրում ենք մտնել Ընկերութեան գրասենեակը և ստանալ նամակն ու տոմսը։ 2—1

## ՓՆՏՌ՚ՈՒՄ ԵՆ՝

1) Վանեցի Վանուշ Պետրոսեան 6 տարեկան։
» Սահակ » 4 »
մօր անունը Պայծառ։ Փնտռողն է մայրը։
2) Մոկացի Տմխս գիւղ. Համբարձում Շահինեան 12 տ.
» » Պայլան » 15 »
» » Շահէն Աւետիսեան 45 »
Փնտռողն է Շահէնի եղբայր Գալուստը։
Տեղեկութիւնները հաղորդել Երևան, առաջնորդարան։

ԼՈՅՍ ՏԵՍԱՒ Գ. ԷԴԻԼԵԱՆԻ ԱՇԽԱՏՈՒԹԻՒՆԸ

## ՍԵԴՐԱՔ ՄԱՆԴԻՆԵԱՆ

ԳԻՆՆ Է 20 ԿՈՊ.

ՀԵՂԻՆԱԿԻ ՄԻՒՍ ԵՐԿԵՐԸ

| | |
|---|---|
| Քննադատ. Ցիլլերի Ձևական սափճաններ . . . | 50 կ. |
| Դաստիարակման ձևեր. . . . . . . . . | 50 կ. |
| Դաստիարակման խնդիրներ . . . . . . . | 65 կ. |
| Շանթի Հին Աստուածներ . . . . . . . | 15 կ. |

Շարունակւում է բաժանորդագրութիւն 1916 թ. «Գաւառի Ձայն» ժողովրդ. թերթի, երրորդ տարի. բաժանորդագինը՝

Տարին—4 ռ., 6 ամիսը—2 ռ. 50 կ., 3 ամիսը՝ 1 ր. 70 կ., 1 ամ. 50 կ.

Խմբագիր-հրատար․ Յովսէփ Միրզոյեան։ 3—1

Հասցէ. Александрополь, ред. „Гавари Цайн"

Ծանօթ. Թերթի հրատարակութիւնը ապահովուած է։

Կ. Հ. Բ. Ը-թեան փախստականների համար հիմնուած

## կազմատանը, տողագծարանի և ծրարնոցի

արհեստանոցում ընդունւում են ամեն տեսակ կազմարարական պատուէրներ։ Պատրաստւում են նաև զանազան մեծութեան ծրարներ, աշակերտական տետրեր և գիւտնական գրքեր։

Դիմել Գանովսկայա փող. տ. Մանթաշեանի։

ՀԱՅՈՑ ԿԵՆՏՐՈՆԱԿԱՆ ԿՈՄԻՏԷՆ ապրիլի 1-ից Գանովսկայա փողոցում, Մանթաշեանի տանը, սկսելու է

## Ի ՎԱՃԱՌ ՀԱՆԵԼ

իր փախստականների համար հիմնուած արհեստանոցներում պատրաստած իրերի՝ ծրարներ, տետրակներ, չուստեր, կօշիկներ, սրբիչներ, սարփինկաներ, և այլն… Պահեստը բաց կլինի ամենայն օր, առաւօտեան ժամի 9-ից մինչև 6-ը, իսկ կիրակի օրերը, 10—12 ժամը. հրաւիրում են բոլոր փախստականները բերելու ինչ որ կարող են պատրաստել։

Պատասխանատու կարգադրիչներ իշխ. Մ. Թումանեան և տ. Հեղինէ Առատամեան։

ԼՈՅՍ ՏԵՍԱՆ ՅՈՎՀ. ԹՈՒՄԱՆԵԱՆԻ

## ՀԱՅՐԵՆԻՔԻՍ ՀԵՏ

Գինը 50 կոպէկ և

## ՆԷ ՂԱՇ ՅՈՎՆԱԹԱՆԸ

և նրա, Քուչակի ու Սայաթ-Նովայի ՍԷՐԸ, գինը 30 կ.։

Դիմել. Тифлисъ, Вознесенская, 16, տ. Աշխէն Խատիսեանին և գրավաճառներին։ 2—1

ՀԱՅ ԵՐԵԽԱՆԵՐԻՆ—ՀԱՅԵՐԷՆ ԽԱՂԵՐ

Լոյս տեսաւ

«ՄԱՆՈՒԿ» ընկ. հրատ. № 9.

## ՄԱՆԿԱԿԱՆ ԽԱՂԸ

Գինը 1 ռ. 50 կ.։

Դիմել գրավաճառներին. վաճառւում են և միւս մանկական խաղերը։ 2—1

ՀԱՐԿԱՒՈՐ ԵՆ ՀԱՅԿԱԿԱՆ ԿԵՆՏՐՈՆԱԿԱՆ ԿՈՄԻՏԷԻՆ

1. Ձեւլգչերներ, 2. սանիտարներ, 3. գրասենեակի գործավար և 4. ռեմինգտոնի վրայ գրող։ Ցանկացողները պէտք է դիմեն Тифлисъ, Абасъ-Абадская площадь, д. № 7.

## ԿՈՐՍՈՒԱԾ ԱՂՋԻԿ

Ծնողները փնտռում են Վանեցի 6 տարեկան Բաջբերուհի Խաչատրեան (Բարութչեան) աղջիկը։ Տեղն իմացողներից խնդրում ենք յայտնել «Համբաւաբերի» խմբագրութեան գրասենեակին։ 2-1

## ՓՆՏՌՈՒՄ ԵՆ

կորած փախստական երեխայ

ԱՀԱՐՈՆ ՅԱԿՈԲԵԱՆՑ

Վանի շրջանից, Հայաստոր գաւառի Աթանանց գիւղացի, 10 տարեկան, անգրագէտ։ Ազգականները նրան կորցրել են անցեալ ամառ, մեծ գաղթի ժամանակ։ Փնտռում է հօրեղբայր Մովսէս Մուրադեանը։ Տեղեկութիւն հաղորդել «Համբաւաբեր»ի խմբագրութեան։

Տպարան «ՊՐՕԳՐԷՍ», Լ. Մ. Պօղոսեանի Типографія „Прогрессъ", Лорисъ-Меликовск. 1 Дозволено военной цензурой

ՅԱՒԵԼՈՒԱԾ № 17

# „ՀԱՄԲԱՐՁԱՐՁԵՐ“-Ի

## ԱՆՈՒԱՆԱՑՈՒՑԱԿ ՓԱԽՍՏԱԿԱՆ ՈՐԲ ԵՐԵԽԱՆԵՐԻ

### Իգդիրի (Ալեղամար գիւղում) փոխադրական որբանոցի

10 փետր. 1916 թ.

| №№ | ԱԶԳԱՆՈՒՆ ԵՒ ԱՆՈՒՆ | Ծննդա-վայր | Տարիքը | Ծնող կենդ. / մայր կամ հայր | Ծնողների տեղը | Գրագէտ | ԾԱՆՕԹՈՒԹԻՒՆ |
|---|---|---|---|---|---|---|---|
| 1 | Աստուրեան Հայկանուշ | Նաջաֆլու | 8 | հայր | Նաջաֆլու | ոչ | |
| 2 | » Եղիա | » | 12 | » | » | „ | |
| 3 | Արաբեան Ալմաստ | Արծկէ | 15 | չունի | | „ | |
| 4 | Գալստեան Արամ | Այգեստան | 8 | հայր | Թեջերլու | „ | |
| 5 | Գէորգեան Սամուէլ | Զաւուրմա | 10 | չունի | | „ | |
| 6 | » Նորայր | Նաջաֆլու | 10 | » | | „ | |
| 7 | » Արամ | » | 7 | » | | „ | |
| 8 | Գրիգորեան Եղիա | Ատեռ | 10 | հայրեմայր | Ալիղամար | „ | |
| 9 | Զաքարեան Գառնիկ | Այգեստան | 5 | մայր | » | „ | |
| 10 | Թաթոսեան Աղաւնի | Ղարակ. | 6 | չունի | | „ | |
| 11 | Թովմասեան Թովմաս | Ալուր | 12 | » | | գրագ. | |
| 12 | Խաչատրեան Անթիկէ | Ատեռ | 8 | հայր | Ալիղամար | ոչ | |
| 13 | » Հմայեակ | » | 4 | » | » | „ | |
| 14 | Ղազարեան Սրբուհի | Կաչաղա | 13 | չունի | | „ | |
| 15 | » Արմենուհի | » | 5 | » | | ,, | |
| 16 | Ճրբաշեան Հրանուշ | Այգեստան | 13 | մայր | Իգդիր | գրագ. | |
| 17 | » Վահան | » | 9 | » | » | ,, | |
| 18 | Մանուկեան Սիրան | Լիմասպատ | 7 | չունի | | ոչ | |
| 19 | Մելիքեան Նուշ | Արճէշ | 17 | մայր | Իգդիր | ,, | |
| 20 | Մնացականեան Մայրիկ | Վան | 12 | չունի | | գրագ. | |
| 21 | Յարութիւնեան Համազասպ | Ողջին | 11 | » | | ոչ | |
| 22 | » Յակոբ | » | 13 | » | | ,, | |
| 23 | » Առաքել | » | 10 | » | | ,, | |
| 24 | » Թումաս | Ախորիկ | 14 | » | | ,, | |
| 25 | » Իսկուհի | | 11 | | | ,, | |
| 26 | » Արամ | | 4 | | | | |
| 27 | Յակոբեան Գիւլիզար | Արճէշ | 7 | մայր | Ալիղամար | ,, | |
| 28 | » Ոստիան | Շուշանայ | 8 | չունի | | ,, | |
| 29 | Յովհաննիսեան Զարեհ | Թուշ | 12 | չունի | | ոչ | |
| 30 | » Թէոս | Կոաֆ | 7 | » | | ,, | |
| 31 | » Մարգար | Զանթուրմա | 11 | » | | ,, | |
| 32 | Նազարեան Յարութիւն | Այգեստան | 12 | հայր | Իգդիր | գրագ. | |
| 33 | Նիկոլեան Մանուկ | Վան | 9 | չունի | | ոչ | |
| 34 | » Ասլան | » | 11 | » | » | գրագ. | |
| 35 | Նիկողայոսեան Ասլան | Ատեռ | 9 | հայրեմայր | Ալիղամար | ,, | |
| 36 | » Արամ | » | 7 | հայր | » | ոչ | |

| | | | | | | |
|---|---|---|---|---|---|---|
| 37 | Շահպազեան Սուրէն | Ալիւր | 13 | չունի | | դրագ. |
| 38 | » Միհրան | » | 11 | » | | " |
| 39 | » Յարութիւն | » | 9 | » | | ոչ |
| 40 | » Խաչատուր | » | 10 | » | | " |
| 41 | Պետրոսեան Արամ | Մուշ | 10 | » | | " |
| 42 | Սարգսեան Սարգիս | Տաղվերան | 10 | մայր | Ալիդամար | " |
| 43 | » Ենովք | Արճէշ | 9 | » | » | " |
| 44 | » Գայծառ | Սիդան | 10 | մայր | Բլուր | " |
| 45 | » Սաթենիկ | » | 7 | » | » | " |
| 46 | Վարդանեան Մարիցա | Ականց | 10 | մայր | Իգդիր | " |
| 47 | » Ասանէթ | » | 7 | » | » | " |
| 48 | » Մարութ | Սարա | 11 | » | Խալփալու | " |
| 49 | Արամ | Ատեռ | 7 | չունի | | " |
| 50 | » | » | 7 | հայր | Ալիդամար | " |
| 51 | Անթառան | | 8 | չունի | | " |
| 52 | Մաքրուհի | Ապողա | 14 | մայր | — | " |
| 53 | Խանազատ | Նամ | 9 | չունի | | " |
| 54 | Յարութիւն | Աւերակ | 14 | » | | " |
| 55 | Նուարդ | Այգեստան | 3 | » | | " |
| 56 | Նոյեմզար | Աւերակ | 7 | » | | " |
| 57 | Սմբատ | Կորածքար | 12 | մայր | Դաշպուռուն | " |

# Անուանացուցակ փախստական որբ երեխաների

## Հին Նախիջևանի որբանոցի

3 սեպտ. 1915

| | | | | | | | |
|---|---|---|---|---|---|---|---|
| 1 | Աբրահամեան Սիրանուշ | Վան | 10 | չունի | — | — | |
| 2 | Ալմաստեան Գիւլլէ | Տօծխայ | 7 | » | — | — | |
| 3 | Բաղդասարեան Սիրանուշ | Լիս | 8 | մայր | Նախիջևան | – | |
| 4 | Բղեաց Հմայեակ | Վան | 10 | հայր-մայր | Բագ. էջմ. | — | |
| 5 | » Եւգինէ | » | 8 | » | » | — | |
| 6 | Գասպարեան Ալմաստ | Խառակոնիս | 9 | չունի | — | — | |
| 7 | » Վանուհի | » | 4 | » | — | — | |
| 8 | Գարեգինեան Երուանդ | Կոճերին | 7 | » | — | — | |
| 9 | Գէորգեան Սուրէն | Էրեմերի | 12 | մայր | Ջաֆարաբադ | — | |
| 10 | » Վարդկէս | » | 7 | » | » | — | |
| 11 | Եղոյեան Արմենակ | Գոմս | 12 | չունի | — | — | |
| 12 | » Շուշան | Մոխրաբերդ | 11 | մայր | Էջմիածին | — | |
| 13 | Լորդեանց Վարսենիկ | Վան | 11 | » | Իգդիր | — | |
| 14 | » Իշխանուհի | » | 8 | » | » | — | |
| 15 | Խանոյեան Նուբար | Կարճկան | 12 | չունի | — | — | |
| 16 | Խանգեալդեան Մարտիրոս | Վան | 12 | մայր | Էջմիածին | — | |
| 17 | » Մայրանուշ | » | 4 | » | » | — | |
| 18 | » Նուբար | » | 6 | » | » | — | |
| 19 | Խուրշուդեան Աշխէն | Լիս | 12 | չունի | — | — | |
| 20 | » Մխիթար | » | 9 | » | — | — | |
| 21 | Ղազարեան Սերովբ | Մոխրաբերդ | 9 | » | — | — | |
| 22 | Մարգարեան Սիրաբփիկ | Վան | 8 | » | — | — | |
| 23 | Մարտիրոսեան Լուսիկ | Ոսկէբակ | 6 | » | — | — | |
| 24 | Մահտեսի Մուրադեան Տիգրան | Մոկս | 9 | » | — | — | |
| 25 | Մուրադեան Մարիամ | Խոռանց | 12 | » | — | — | |
| 26 | Մելիքեան Ազնիւ | Վ. Ցեփան | 10 | » | — | — | |
| 27 | Մելիք Յակոբեան Նազարէթ | Խոռանց | 12 | » | — | — | |
| 28 | Յակոբեան Արշակ | Մոկս | 10 | » | — | — | |
| 29 | Յովհաննիսեան Խորսով | Գոմս | 14 | » | — | — | |
| 30 | » Փէփրուհի | » | 10 | » | — | — | |
| 31 | Յովհաննիսեան Հայաստան | » | 8 | չունի | — | — | |
| 32 | Ներսէսեան Պայծառ | Մոխրաբերդ | 7 | մայր | Էջմիածին | — | |
| 33 | Նշանեան Ազատ | Շատուան | 6 | չունի | — | — | |
| 34 | Նովոյեան Գրիգոր | Ջանիկ | 11 | » | — | — | |
| 35 | » Արեգնազան | » | 7 | » | — | — | |
| 36 | Պարոնիկեան Սիրաբփի | Վան | 13 | մայր | Էջմիածին | — | |
| 37 | Պօղոսեան Թագուհի | Խորգոմ | 11 | չունի | — | — | |
| 38 | » Եւգինէ | Խժեժք | 9 | հայր-մայր | Պոլիս էջմ. | — | |
| 39 | » Սմբատ | » | 5 | » | » | — | |
| 40 | Պետոյեան Գէորգ | Ջամալդին | 7 | չունի | — | — | |
| 41 | Սահակեան Գարեգին | Վան | 9 | » | — | — | |
| 42 | Վարդանեան Վարդկէս | Փառուխ. | 10 | հայր-մայր | Ջին. ռ. զօրք. | — | Մայրը Երևան |
| 43 | » Սինօ | » | 9 | չունի | — | — | |
| 44 | » Արշակ | Կարճկան | 10 | » | — | — | |
| 45 | Տէր-Աւետիսեան Մարգարիտ | Ջեչանի | 7 | » | — | — | |

| | | | | | | | |
|---|---|---|---|---|---|---|---|
| 46 | Տէր-Տէրեան Իսկուհի | Ծիծանայ | 9 | » | — | — | |
| 47 | Աւետիս | Շատախ | 4 | » | — | — | |
| 48 | Աբրահամ | Մոկս | 10 | » | — | — | |
| 49 | Ափիկ | Վան | 10 | մայր | Նախիջեան | — | |
| 50 | Արշալոյս | Սաչլու | 4 | հայր | Զինուոր | — | |
| 51 | Գրիգոր | Վան | 9 | մայր | Նախիջեան | — | |
| 52 | Ջուլօ | Լիլեան | 6 | չունի | — | — | |
| 53 | Լեոն | Գաւաշ | 5 | » | — | — | |
| 54 | Խաչատուր | Խնուս | 8 | մայր | Նախիջեան | — | |
| 55 | Հայկանուշ | Սաչլու | 6 | հայր | Զինուոր | — | |
| 56 | Մանուկ | Մոկս | 8 | չունի | — | — | |
| 57 | Յակոբ | Խնուս | 12 | մայր | Նախիջեան | — | |
| 58 | Շուշան | » | 6 | » | » | — | |
| 59 | Սահակ | — | 6 | — | — | — | Ոչինչ չը գիտէ |
| 60 | Վարդան | Մոկս | 4 | չունի | — | — | |